МЕЖДУНАРОДНЫЙ ДВУЯЗЫЧНЫЙ РУССКО-АРМЯНСКИЙ ЕЖЕМЕСЯЧНЫЙ ЖУРНАЛ

# Գործարար ГОРЦАРАР

АПРЕЛЬ-ИЮНЬ № 4-6 (168-170) 2013 г.



**Кто помнит свою историю – не может не смотреть назад**

**Кто чтит прошлое, у того не может не быть памяти**

*Э35*

# Բարին ինքնին առաքելություն

Միգուցե սկսեմ այսպես, ինչպես հեքիաթում.

– Լինում է, չի լինում, մի դղյակ է լինում, ու այդ դղյակում նրա տերերը...

Այդպես հեքիաթում: Մինչդեռ այս անգամ խոսքն իրականության մասին է, և դղյակն էլ «Օրրան» հասարակական բարեգործական կազմակերպության Վանաձորի մասնաճյուղի նորակառույց մասնաշենքն է, իսկ նրա տերերը անապահով ընտանիքների 57 երեխաները: Սա իրականություն է, և անկեղծ ասած, այն ինչ որ տեղ բարի հեքիաթ է հիշեցնում: Թեկուզ այն բանի համար, որ ինչպես ամեն մի նմանատիպ կազմակերպություն, «Օրրանի» առաքելությունը ևս բարի է. երեխաներին ազատել կապանքներից, դաստիարակել նրանց որպես ուժեղ, բարի ու ազնիվ անհատներ: Այստեղ է, որ քաղաքի երեխաները հնարավորություն կունենան արտադպրոցական կրթություն ստանալ, արհեստներ սովորել, այստեղ կդրվի նրանց առողջ սերունդ ու ապագա ունենալու հիմքերը: Ասել է թե նրանց մանկությունը, պատանեկությունը մանկության ու պատանեկության մեջ կհաստևանա, ասել է թե նրանց կյանքը ինչ-որ չափ լիարժեք կդառնա:



գալ կարիքավորի, սոցիալապես անապահովի, անընդհատ սպառողի հոգեբանական վիճակից:

դպրոցի սուսերամարտի խմբակում ու մեծ սիրով մարզվում են մարզիչ Խաչիկ Լոռյանի մոտ:

– Որ երեխան չի սիրում երգել: Կամավորական սկզբունքներով երեխաների մեջ ազգագրական երգերի ոգի է սերմանում ճանաչված խաչքարագործ ու այդ երգերի մեծ պրոպագանդիստ Բոգդան Հովհաննիսյանը:

Սոցիալական աշխատող Լուսինե Աքմաքչյանն էլ փաստում է, որ չափահասության տարիքը լրանալուց հետո էլ երեխաները չեն դադարում այցելել կենտրոն այս անգամ արդեն կամավորի և օգնողի կարգավիճակով:

Համոզված կարելի է ասել, որ «Օրրանում» բարի կամքի դրսևորումները սոսկ խոսքեր չեն: Հոգեբան Վարդան Այվազյանը, սոցիալական աշխատող Լուսինե Աքմաքչյանը, մանկավարժներ Գայանե Մանուչարյանը, Մարիետտա Սողոյանը, կամավոր մանկավարժներ Արմինե Ապրեսյանը, Լուսինե Լալյանը, ձեռագործության, փայտագործության, կավագործության դասատուներ Ժաննա Եսայանը, Էդգար Մկրտչյանը, Վահե Ղևոնդյանը պատասխանատվության իրենց չափով իբրև բարի կամքի զինվոր կենտրոնի հեղինակությանը նոր դիմագիծ են



Կենտրոնի տնօրեն Մարիամ Մանուչարյանը



Դասապատրաստում



«Օրրանի» աշխատակազմը

Մինչ նոր մասնաշենքը «Օրրանը» կարողանում էր հոգալ 59 երեխայի անհոգ ժպիտը: Այժմ եռահարկ շինությունը իր պատերի տաքուկ անկյունում կարող է ընդունել մինչև 120 երեխա: «Կարծում եմ, որ մենք կփորձենք թոթափել մի քանի ավել ընտանիքների սոցիալական լուծը, կփորձենք օգնած լինել ավելի շատ ընտանիքների», - ասում է կենտրոնի տնօրեն Մարիամ Մանուչարյանը:

Այնուհետև հավելում, որ օրրանցիները սեփական հարկի տակ ուրախ կլինեն ընդունելու նաև միայնակ ու անօգնական տարեցների: Առաջիկայում նաև տարեցները կկարողանան մասնակցել «Սնունդ» ծրագրին, գալ, ամեն օր տաք սնունդ ընդունել, և մինչև երեխաները կվերադառնան դպրոցից, շփվել միմյանց հետ:

Նարինե և Սոֆիա Խաչատրյան, Նազելի Գրիգորյան, Էդուարդ Բաղդասարյան, Ռոբերտ Եգանյան... օրրանցիների առջև ամեն օր բացվում են «Օրրանի» հյուրընկալ դռները:

Հատկանշական և շատ կարևոր է, որ կենտրոնի սաների հետ, բացի դասապատրաստումից, ամենօրյա աշխատանքում այստեղ առաջնորդվում են երեխաներին ընդգրկել կրթական ու մշակութային բազմազան ծրագրերում, տարբեր խմբերում նրանց պատրաստելով հետագայում դուրս



Կավագործության դասարանում

Եվ ինչպես հավաստիացնում է կենտրոնի տնօրենը. «Մենք ոչ թե երեխային օգնություն ենք տալիս և սովորեցնում ենք նստել ու սպասել օգնության, այլ մենք սովորեցնում ենք սիրել աշխատանքն ու վաստակել: Մենք երեխային տալիս ենք գործիք՝ հետո ապրելու համար»:

Երեխաների առօրյան էլ ավելի լիարժեք դարձնելու նախապայման է նաև նրանց ներգրավվումը սպորտային խմբակներում: Տնօրեն Մարիամ Մանուչարյանը ուրախությամբ է նշում, որ իր շահառուներից մի քանիսը ներգրավված են քաղաքի սպորտ-

հաղորդում՝ բաց գիտակցելով, որ իրենց քաղաքը, բնակավայրը իրենց տունն է, իր դժվարություններով ու հոգսերով, և նրա կրողը նաև իրենք են:

Կազմակերպության հանձնառությունն ու նվիրվածությունը, անհրաժեշտությունը սատարելու կարիքավոր երեխաներին, ի սկզբանե արձագանքեցին ու կատարեցին կազմակերպության հիմնադիր Արմինե Հովհաննիսյանը, կենտրոնի կառուցման հովանավորներ, անգլիահայ բարերարներ Գրիգոր և Աննա Գրիգորյանները, որոնց անուններով էլ կոչվել է մասնաշենքը:

Շենքի կառուցման համար իրենց ներդրումն են ունեցել նաև Իտալիայի արտաքին գործերի նախարարությունը, CIPS կազմակերպությունը, Լոս Անջելեսից բարերարներ Զավեն և Սոնա Աքյանները, Ալվարդ Բարսեղյանը, Սյուզան Քլեյնը, Արաբական Միացյալ Էմիրություններից Նազո Բուրդուրջյանը, ովքեր մշտական նյութական և բարոյական աջակցություն են ցուցաբերում կազմակերպությանը:

Բարին ու բարեգործությունը ինքնին առաքելություն է:



**Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆ**

*Լուսանկարները՝ Գոռ ԱՂԱՋԱՆՅԱՆԻ*

# ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՒ ՀԱՅԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

Ազգը, որպես հասարակական ամբողջական օրգանիզմ, չունի հին ու նոր պատմության շրջաններ: Պատմությունն ազգից անբաժանելի ամբողջություն է եւ ամենահնագույն շրջանի պատմությունն իսկ ներկա է ու գործում է այսօրվա իրականության մեջ ինչպես ներազգային կյանքում, այնպես էլ արտաքին բազմաբնույթ փոխհարաբերություններում: Այս փաստը գիտակցվել է դեռ հնագույն ժամանակներում եւ պատմությունը միշտ եղել է ռազմա-քաղաքական գիտություն: Հնուց ի վեր, ելնելով քաղաքական շահերից, շարադրվել ու վերաշարադրվել են կեղծված պատմություններ, նպատակ ունենալով զրավել այլոց հարուստ ու բարգավաճ կենսատարածքները, յուրացնել հոգեւոր-մշակութային արժեքները, թաքցնել գործված հանցանքները եւ այլն:

Պատմությունը գիտի շատ դեպքեր, երբ պատահական դիպվածների օգնությամբ ասպատակող ուժ են դառնում քաղաքակրթական հիմքեր եւ մշտական կենսատարածք չունեցող քոչվոր ցեղերը: Իրենց քանդող էության ու բիրտ ուժի միջոցով զրավելով որեւէ քաղաքակրթական օջախի տարածք, յուրացնում են նրա հոգեւոր-մշակութային ու նյութական արժեքները, հորինում դրանց ստեղծման պատմության իրեց տարբերակը եւ աշխարհին ներկայանում այդ կեղծ պատմությամբ: Դրա հնագույն օրինակը Արաբական թերակղզու քոչվոր սեմական ցեղերի կողմից Շումերի զրավման, շումերական քաղաքակրթության յուրացման եւ այդ քաղաքակրթության ստեղծումն իրենց աստվածներին ու նախնիներին վերագրելու փաստն է:

*(Հովսեպոս Փլավիոս (հատնի է նաև որպես Հովսեփ Բեն Մաթաֆիա, իսկ հռոմեական քաղաքացի դառնալուց հետո՝ Տիտոս Փլավիոս Հովսեպոս, մ. թ. 37 – մոտ 100), անտիկ շրջանի հրեա պատմիչ և մատենագիր: Գրել է «Հրեական պատերազմի մասին», «Հրեական հնախոսություն», «Ընդդեմ Ապիոնի», «Կյանքը» աշխատությունները: Բացառիկ տեղեկություններ է հաղորդում Հայոց արքաներ Տիգրան Բ Մեծի, Արտավազդ Բ-ի և Տրդատ Ա Արշակունու վերաբերյալ:)*

Մ. թ. I դ. հրեա պատմիչ Հովսեպոս Փլավիոսը գրում է, թե ինքը ստիպված հրեաների պատմությունը շարադրում է ըստ Հին Կտակարանի, քանի որ հույները կեղծել են իրենց պատմությունը: Նոր ժամանակներում նույն ձեւով թուրքական քոչվոր ցեղերը զրավեցին Արեւմտյան Հայաստանն ու Փոքր Ասիան, հիմնավորվեցին այնտեղ, իրագործեցին բնիկ հայերի ցեղասպանությունը, բռնի ուժով իրենց մեջ լուծեցին հայերի, հույների եւ այլ բնիկների, տիրացան հայկական եւ փոքրասիական հին քաղաքակրթական արժեքներին եւ պատմության կեղծարարության ճանապարհով փորձում են ծածկել իրենց հանցանքները եւ այդ տարածքների քաղաքակրթական արժեքների ստեղծումը վերագրել իրենց չեղած նախնիներին:

Մոտ հարյուր տարի է, ինչ համաշխարհային պատմագիտությունն իր քաղաքական պատվիրատուների շահերին համապատասխան փորձում է իրականացնել համաշխարհային պատմության խոշորագույն կեղծարարությունը: Խոսքը վերաբերում է հայոց ծագումնաբանությանը, արիականության էությանն ու էթնո-հոգեւոր ակունքներին:

Ողջ միջնադարի ընթացքում քրիստոնեական աշխարհը ընդունում էր Հին Կտակարանում արտացոլված այն փաստը, որ Դրախտը (մարդկության ծագման օրրանը) եւ Փրկության երկիրը Տիգրիսի ու Եփրատի ակունքներն ընդգրկող պատմական Հայաստանն է: Ըստ Հին Կտակարանի, նախաջրհեղեղյան նահապետները եւ ջրհեղեղից փրկված Նոյը Հայաստանում են հաղորդակցվում Աստծո հետ: Հրեաների նախահայր Աբրամը եւս Աստծո հետ առաջին անգամ հաղորդակցվում է Հայաստանում Հայոց Միջագետքի Խառան քաղաքում:

XIX դ. ձեւավորվում է հնդեվրոպական լեզուներ տերմինը եւ այդ լեզուների ծագումնաբանական կապերն ուսումնասիրող պատմա-համեմատական լեզվաբանությունը: Հանգելով այն մտքին, թե այդ լեզուները ծագում են մի նախալեզվից, գիտնականները ձեւակեպեցին այդ նախալեզուն կրողների նախնական բնակության տարածքի տեղայնացման խնդիրը:

XIX դ. երկրորդ կեսին, որպես հնդեվրոպական ցեղերի նախահայրենիքի, որոշ եվրոպական գիտնականներ նշում էին պատմական Հայաստանի տարածքը: Սակայն այս գիտության հետագա «զարգացումը» գնաց այլ ճանապարհով:

XIX դ. վերջին եւ XX դ. սկզբին աշխարհում գերիշխանության հասնելու ռազմավարական ծրագրերի շուրջ ձեւավորվեցին խոշոր ֆինանսա-քաղաքական ուժեր, որոնք դարասկզբին կարողացան եվրոպական հզոր պետություններին ռազմական առճակատման մղել: Ծրագրած խոշորածավալ աշխարհա-քաղաքական փոփոխությունների իրականացման նախապատրաստական փուլում նրանք ստեղծում էին իրենց ապագա գործունեության պատմական հիմնավորումը եւ գաղափարախոսությունը: Իրենց համար վտանգավոր գաղափարախոսությունները ներդրվում էին այնպիսի միջավայրերում, որտեղ դրանք անպայմանորեն պիտի դառնային քանդող ուժ, վարկաբեկվեին, դուրս մղվեին ու զրկվեին ապագայում հզոր քաղաքական կառույցներ ստեղծելու հնարավորություններից:

Կոմունիստական գաղափարախոսությունը ներդրվեց Ռուսաստանում, իսկ արիականությունը Գերմանիայում: Պատերազմում պարտված եւ ռեւանշի ձգտող Գերմանիայում ոգեւորությամբ ընդունվեցին արիականության անվան տակ քողարկված ֆաշիստական լոզունգները: Գերմանացի պատմա-լեզվաբաններն «ապացուցեցին», թե արիների նախահայրենիքը Հյուսիսային Եվրոպան էր՝ գերմանական ցեղերի բնակության վայրերը: Ապա ստեղծվեց «ընտրյալ, ազնվացեղ» ազգի առասպելը եւ ֆաշիստական գաղափարախոսությունը:

Անշուշտ, այն ոչ մի ընդհանուր բան չուներ բարձրագույն բարոյա-հոգեւոր չափանիշների վրա հիմնված արիականության հետ: Ի վերջո, ինչպես ծրագրավորված էր, սանձազերծվեց երկրորդ համաշխարհային պատերազմը, Գերմանիան պարտվեց հերթական անգամ եւ վարկաբեկվեց արիականությունը:

Սովետական Միության հարցում խաղաթղթերը խառնեց Ստալինն իր վարած քաղաքականությամբ, ինչը հետաձգեց կոմունիզմի վարկաբեկումը եւ ՍՍՀՄ-ի փլուզումը:

Սովետական գիտնականները ջրածնային ռումբի եւ ռազմա-քաղաքական այլ գործոններին զուգահեռ «գտան», որ հնդեւրոպական նախալեզվի կրողները ապրել են հարավ-արեւելյան Եվրոպայում Դնեպր եւ Դոն գետերի ստորին հոսանքների շրջանում: Նորից դարավոր «ճշմարտությունն» է. հաղթել ես, ուրեմն քո գրած պատմությունն է ճիշտ:

Բրեժնեվյան ճահճացման շրջանում իրանական ծագում ունեցող (օսեթիններ, տաջիկներ եւ այլն) գիտականներն արտասահմանյան որոշ գիտնականների աջակցությամբ փորձում էին հիմնավորել նախահայրենիքի նախկինում քննարկված միջինասիական տարբերակը: Այդ նույն ժամանակ Թ. Գամկրելիձեի եւ Վ. Իվանովի ջանքերով վերակենդանացվեց այն նախնական տեսակետը, թե հնդեւրոպական ցեղերի նախահայրենիքը պատմական Հայաստանն է:

Իրենց մոտ 1000 էջանոց երկհատորյա մենագրության մեջ չհիշատակելով Հայաստան անվանումը, նրանք նախկին փաստերին ավելացնելով իրենցը, փորձում են հիմնավորել, որ Հայաստանն է եղել հնդեւրոպական ցեղերի նախահայրենիքը: Անշուշտ, նրանց առաջնային խնդիրն էր ապացուցել, որ քարթվելական ցեղերը եղել են արիների հարեւաններն ու ժամանակակիցները:

Այնուամենայնիվ կոմունիստական գաղափարախոսության վերջնական վարկաբեկումը եւ Սովետական Միության ծրագրավորված փլուզումը ուշացած, բայց նույնպես կայացվեց: ՍՍՀՄ փլուզման արդյունքում հայերս, որպես «նվեր», ստացանք անկախություն, դրսի թելադրանքը հլուհնազանդ կատարող, շահամոլ ու ապազգային ղեկավարներ, ... ու արիների նախահայրենիք կոչվելու իրավունքը տվող կիսատ-պռատ մի տեսություն: Որպեսզի հասկանանք, թե դրսում մեր հետագա ճակատագրի համար ինչ ծրագրեր են նախապատրաստվում այդ «նվերների» հիմքի վրա, պետք է անդրադառնալ դրանց նախապատմությանը:

Հայերի ցեղասպանությունը կազմակերպող եւ իրականացնող ուժերը հասկացան, որ անհնար է իրականացնել հայ ազգի ֆիզիկական բնաջնջման ծրագիրը: Ցեղասպանության արդյունքում առաջացավ իր ազգային ինքնությունը պահպանող Սփյուռք, որի գոյությունը վերջնականապես անհնարին դարձրեց նույնիսկ նման խնդիր դնելը: Սակայն դրված էր լուծում պահանջող ռազմավարական գլոբալ խնդիրը՝ Հայաստանը դատարկել հայերից: Իրենց ֆինանսա-տնտեսական ու ռազմա-քաղաքական հզորության վրա վստահ, իրենց իրական շահերն ու ագրեսիվ նպատակները կեղծ մարդասիրական ու կոսմոպոլիտական գաղափարախո-

4

3 ➔

սություններով դիմակավորած ու աշխարհը դեզինֆորմացիայով հեղեղած հիշյալ ուժերը խնդրի լուծումը տեղափոխեցին այլ ոլորտ. հայերի մեջ թուլացնել ազգային ինքնության գիտակցումը, կտրել հոգեւոր-պատմական արմատներից եւ ֆինանսա-տնտեսական ու քաղաքական մեթոդներով Հայաստանում ստեղծել այնպիսի սոցիալական իրավիճակ, որը բերի Հայաստանի հայաթափմանը:

Այդ խնդրի լուծման համար նախ պետք էր կեղծել պատմությունը, հայերին զրկել Հայկական լեռնաշխարհի նախաքրիստոնեական քաղաքակրթական արժեքների ստեղծողը կոչվելու իրավունքից, ներարկել քոչվոր ու եկվոր լինելու գաղափարը եւ դրանք զուգակցելով ժամանակակից այլեւայլ զայթակղությունների հետ թուլացնել հայերի կապը իրենց բնական կենսատարածքի պատմական Հայաստանի հետ: Այսինքն, ծրագրված էր հայոց ազգային հիշողությունից մաքրել իր բնիկ կենսատարածքի հետ կապող եւ հնագույն ժամանակներից մինչեւ մ.թ.ա. VI դ. ընկած իրական իֆորմացիան եւ ներարկել նորը կեղծվածը (մ.թ.ա. VI դ. ընտրությունը պայմանավորված էր այն հանգամանքով, որ այդ շրջանի գրավոր աղբյուրներում հայ = արմեն, Հայասաատան=Արմենիա անվանումներն այնպիսի դրսեւորումներ ունեն, որ անհնար էր դառնում կեղծ մեկնաբանություններ հորինել կամ թաքցնել):

Խնդրի իրականացման համար նախ հավաքագրվեց տարբեր ազգությունների պատկանող եւ ճանաչված գիտնականների խումբ, որը պետք է ստեղծեր ու հիմնավորեր կեղծ պատմությունը եւ այն ներկայացներ որպես գիտական անբեկելի ճշմարտություն:

Զուգահեռաբար վերահսկողության տակ վերցվեցին հայկական հայագիտական կենտրոնները: XIX դ. վերջում եւ XX դ. առաջին քառորդում հայոց էթնո-հոգեւոր պատմության ասպարեզում հիմնարար աշխատանքներ էին կատարում Մխիթարյան միաբանության անդամները (Ղ. Ալիշան, Հ. Ավգեր, Հ. Տաշյան, Ա. Մատիկյան եւ այլոք): Նախ մարեց մխիթարյանների հզոր ձայնը, ապա, հիմնականում ետպատերազմյան շրջանում, եվրոպական ու ամերիկյան առաջատար համալսարաններում բացվեցին հայագիտական հորջորջվող կենտրոններ, որոնց կեղծարար գործունեության մասին շատ է խոսվել ու գրվել: Սրանք ուշ շրջանի (վաղ միջնադարից մինչեւ մեր ժամանակները) հայոց պատմության բացահայտ կեղծարարությամբ պետք է իրենց վրա սեւեռեին բոլոր հարվածները, որպեսզի գլոբալ պատմության կեղծ տարբերակն ստեղծող առաջատար գիտնականները մնային կասկածից դուրս:

Տոտալիտար իշխանության եւ գաղափարախոսության պարտադրած պայմաններում գտնվող սովետահայ հայագետներին վերահսկելու խնդիրն ավելի դյուրին եղավ: Հայագիտության առումով Սովետական Հայաստանը դարձավ քաղաքական թելադրանքին համապատասխանող «գիտական» թեզերի արտադրամաս: Միշտ կարելի է գտնել եւ գտնվեցին կենդանության օրոք սին փառքի, կոչումների, տիտղոսների ու պաշտոնների ձգտող, սրբություն չունեցող մարդիք, որոնք սեփական ազգի դեմ օտարի կազմակերպած դավերի իրականացման գործիք են դառնում: Հայագետ պրոֆեսորների ու ակադեմիկոսների քանակը շատ ավելի շատ էր, քան գիտության որեւէ այլ ասպարեզում: Նույնքան շատ, սակայն վախվորած (հանկարծ չշեղվեն «գիտության» կողմից ընդունված տեսակետներից) եւ զուտ ակադեմիական աշխատանքներում խուսափելով գլոբալ հայագիտական պրոբլեմներ դնելուց, նրանք միկրոսկոպիկ ճշգրտության էին հասնում երկրորդական, մասնավոր հարցերում, «ճշգրտում» էին մատենագիրների հաղորդած պատմությունները: Այս ճանապարհով նրանք, օրինակ, «պարզեցին», որ արիական դիցա-աշխարհընկալումային սյուժեներով հնդկական «Ռիգվեդա»-ից ավելի հարուստ «Սասնա Ծռեր»-ը կապված է Ասորեստանից Հայաստան փախած հայրասպան եղբայրների անվան հետ կամ լավագույն դեպքում միջնադարում արաբ նվաճողների դեմ հայերի մղած պայքարի արտացոլումն է, որ ս. Մեսրոպ Մաշտոցից առաջ երբեք չենք ունեցել գիր ու գրչություն, որ հայոց նախաքրիստոնեական դիցարանը իրանականից է փոխառնված, որ հայերը մ.թ.ա. I հազ. Եվրոպայից գաղթելով եկել հաստատվել են Հայաստանում եւ ոչ մի կապ չունեն տեղի հնագույն քաղաքակրթությունը ստեղծողների հետ...

Անշուշտ եղան որոշ բացառություններ (Գ. Ղափանցյանը փորձեց ընդդիմանալ հնդեւրոպական տեսություններին, Գ. Ջահուկյանը կարողացավ հայերենի, որպես անկախ լեզվի, վաղնջական ժամանակը հասցնել մ.թ.ա. III հազ. եւ այլն), սակայն այդ ողջ ժամանակահատվածում հայազգի հայագետներն իրենց հայացքները հառել էին տխրահռչակ Ի. Դյակոնովին եւ սպասում էին նրա ծրագրային ցուցումներին: Ինչու Վ. Համբարձումյանը, Ա. Ալիխանյանը եւ հայ ժողովրդի մյուս հանճարեղ զավակները կարողանում էին իրենց ինքնուրույն խոսքն ասել իրենց ուղղությունները բացել գիտության, տեխնիկայի ու արվեստի տարբեր բնագավառներում, գիտակցելով, որ ազգը ծնել է իրենց, որպեսզի իրենք վերածնեն ազգին: Իսկ հայ հայագետը այդպես էլ չկարողացավ ասել այն պարզ ճշմարտությունը, որ հայը պատմական Հայաստանի բնիկն է, արիական հոգեւոր-աշխարհընկալումային համակարգի ստեղծողը, առաջինը ցորեն մշակողն ու մետաղ ձուլողը..., երբ նրա ձեռքի տակ էին հայերենի, «Սասնա Ծռեր»-ի, Մ. Խորենացու, Ա. Շիրակացու, պատմական Հայաստանի սրբազան տեղանունների աշխարհագրության, Հայաստանում պեղված հնագիտական նյութի, հայկական ժայռապատկերների ընձեռնած եւ այլ բազմաթիվ փաստեր:

Աշխարհում թերեւս ոչ մի ազգ չունի այն երկարատեւ ու բազմաբնույթ պատմական փորձը, որ ունենք մենք: Սակայն չունեցանք այդ փորձից դասեր քաղելու հնարավորությունը, քանզի հայագիտության կողմից չի կատարվել այդ փորձի պատմաքաղաքական օբյեկտիվ քննությունը, ինչի արդյունքներն այսօր շատ անհրաժեշտ են հայությանն ու նրա պետությանը: Չունեցանք հայ ժողովրդի պատմության այնպիսի գրքեր, որոնք նախատեսված լինեին նոր սերունդներին հայրենասիրական ու հոգեւոր-բարոյական բարձր չափանիշներով կրթություն տալու համար: Պատահական չէ, որ նման նպատակներով առ այսօր շարունակում ենք օգտվել միայն Խորենացու «Պատմությունից»: Այսօր որակապես նոր սերունդ է մտնում հայագիտության ասպարեզ, սակայն չի երեւում, թե նրանք կկարողանան ազատվել նախկին «գիտական» օտարի թելադրանքով կառուցված կաղապարներից ու մտածելակերպից, որովհետեւ նրանց կրթել ու շարունակում են կրթել հները, ովքեր այսօր էլ մնում են օտարի ձեռքի գործիքն ընդդեմ սեփական ազգի եւ գործում են «ընտանիք եմ պահում» ադարացումով:

Նման գործելակերպի դրսեւորումներից է այն փաստը, որ ԵՊՀ-ի իրանագիտության ամբիոնն իր ուսանողների համար «Արիական պրոբլեմը, հնագույն արիների պատմությունն ու մշակույթը» թեմայով դասախոսություններ կարդալու էր հրավիրել Ս-Պետերբուրգի համալսարանի արեւելագիտության ֆակուլտետի դեկան, ՌԴ ԳԱԱ թղթակից-անդամ, պրոֆեսոր Ի. Մ. Ստեբլին-Կամենսկուն:

Վերջինս իր երկրորդ դասախոսությունը սկսեց ի միջ այլոց արված հայտարարությամբ, թե «գիտության կողմից ապացուցված է, որ հայերը եւ հայերենը ոչ մի առնչություն չունեն արիականության հետ», ապա մոտ 30-40 րոպե խոսելով արիական եւ ուրալյան լեզուների փոխհարաբերությունների մասին, խնդրեց հարցեր տալ: Հարցերի ընթացքում պարզվեց, որ նա Ի. Դյակոնովի աշակերտն է, ծանոթ չէ (!) ոչ հայերենին, ոչ հայ մշակույթին: Պրոֆեսորին ուղղված որոշ հարցերի պատասխաններ ուսանողների կողմից ընդունվեցին ծափերով եւ միայն ունկնդիրների մի փոքր խումբ, ովքեր իրենց արիական ծագումը ճանաչում ու ընդունում են ոչ թե «գիտական հեղինակությունների» գրքերով, այլ գենետիկ հիշողությամբ, արտահայտեցին իրենց արդարացի վրդովմունքը: Պարզ է ու ցավալի, որ ապագայում այդ ուսանողները կրկներգելու են դյակոնովների, թոմսոնների, ռասսելների, սյունիների ասածները: Նույն ամբիոնում հաջորդ հրավիրված դասախոսողը տխրահռչակ Ռասսելն էր, որն իր ելույթի առաջին իսկ նախադասության մեջ հայտարարեց, թե հայկական մշակույթն ամբողջովին իրանականացված է:

Եթե մարդ անհատը կեղծում է իր անձնական կենսագրությունը, այն որակվում է հանցանք եւ հետապնդվում օրենքով: Ազգի պատմության կեղծարարությունը եւս հանցանք է, եւ հանցանքների հանցանք սրբապղծություն: Ուր է ազգային անվտանգության դիրքերում կանգնած սահմանադրական այն Օրենքը, որում ներկայացված լինի մի պարզ ճշմարտություն. ազգի պատմությունը ներսից լուսաշող Տաճար է, որը միշտ ավարտուն է ու ամբողջական եւ միաժամանակ անվերջ կառուցվող, իսկ դրսից գոյապայքարի դաժան կռիվ, որում ոչ մի պահի դադար չկա: Այդ Տաճարը ճիշտ կառուցելու համար ազգի ամեն մի սերունդը պետք է ճշգրիտ իմանա երկու բան. նախնյաց կառուցածի տրամաբանությունը եւ նախնյաց տարած հաղթանակների գաղտնիքը:

Մեր սերնդի համար դա համատարած

➔ 5

**ԻԴ**

ճգնաժամից ու խղճուկ վիճակից վեր հառնելու, ազգային պետություն կառուցելու բանալիներից մեկն է, իսկ դրանց բացահայտումը հայագիտության առաջնային խնդիրը: Մյուս կողմից, այդ առաքելության իրականացման ժամանակ հայագիտությանն անընդհատ իր թիկունքում պետք է զգա պետության հզոր աջակցությունը:

Սակայն երեւում է, որ իշխանական աթոռակռիվներում եռանդուն, ճշգրիտ հաշվարկներով ու ճարպկությամբ գործող «պետական այրերը» հավանաբար հայագիտության ազգապահպան առաքելության մասին որոշում կայացնելու համար երբեք ժամանակ չեն ունենալու: Երբ է Ազգային Ժողովում հայագիտության հարցը դառնալու օրակարգային:

***Համլետ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ,***
***ֆիզիկոս, հայագետ***

# ԵՐԵՎԱՆՈՒՄ ԲԱՑՎԵՑ ԸՆԹԵՐՑՈՂԻ ԱՐՁԱՆԸ




Երևանը գրքի համաշխարհային մայրաքաղաք հռչակելու ամփոփիչ միջոցառումների շրջանակում տեղի ունեցավ նկարիչ-քանդակագործ Նուռի՝ Արման Դավթյանի հեղինակած Ընթերցողի արձանի բացման հանդիսավոր արարողությունը:

Բրոնզաձույլ քանդակը տեղադրվել է խորհրդանշական վայրում՝ Խնկո Ապոր անվան մանկական գրադարանի հարևանությամբ: Ավելի քան 2 մետր բարձրություն ունեցող կոմպոզիցիան կազմված է գրքերից և լուսամփոփից:

Ինտերակտիվ քանդակը մեկ այլ առանձնահատկություն էլ ունի. այն հնարավորություն է ընձեռում քանդակի հարակից տարածքից անվճար համացանցային կապով մուտք գործելու www.karda.am կայքէջ և ներբեռնել միլիոնավոր գրքեր: Ի դեպ, Ընթերցողի քանդակն իր տեսակի մեջ միակն է աշխարհում:

# Նրանց համար, ովքեր չգիտեն Կարաբալայի պատմությունը...



Լեգենդար ծաղկավաճառ Կարաբալան ծնվել է XX դարի սկզբին հարուստ ընտանիքում Երևանի թաղամասերից մեկում՝ Քանաքեռում: Նրա իսկական անունն է Ստեփան Հարությունյան:

Խորհրդային կարգերի հաստատումից հետո Ստեփանի ընտանիքը կորցրեց իր ունեցվածքը: 1934-1936 թթ. Ստեփանը դատապարտվեց «իշխանության հրապարակային վարկաբեկման» համար և հայտնվեց մի բանտախցում հայ մեծ բանաստեղծ Եղիշե Չարենցի հետ, որը Ստեփանին գովերգում է իր բանաստեղծություններից մեկում:

Աշխենը՝ Ստեփանի կինը, չսպասեց նրան և ամուսնացավ մեկ այլ մարդու հետ: Երբ Ստեփանը դուրս եկավ բանտից, նա չուներ ո՛չ տուն, ո՛չ կին, ո՛չ որդի, որին նրան այլևս արգելեցին տեսակցել:

Ստեփանը սկսեց Աստաֆյան փողոցում (այժմ՝ Աբովյան) ծաղիկներ բաժանել անցորդ աղջիկներին: Զամբյուղը ձեռքին էլ նա հիշվեց բազմաթիվ երևանցիների համար:

Կարաբալան մահացավ 70-ական թվականների սկզբին, համաձայն լեգենդի՝ սառեց փողոցում: Նրա գերեզմանի վայրը մինչ օրս անհայտ է:

1991-ին Աբովյան փողոցում կանգնեցվեց Լևոն Թոքմաջյանի հեղինակած Կարաբալայի հուշարձանը:

# Ռոման Աբրամովիչի բիզնես կանոնները



«Forbes» ամսագիրը հրապարակել է միլիոնատեր, պատգամավոր, «Chelsea» ֆուտբոլային ակումբի սեփականատեր Ռոման Աբրամովիչի բիզնես կանոնները.

**1.** Ես գերադասում եմ «մենքով» խոսել այն մարդկանց մասին, ում հետ աշխատում եմ: Գրեթե երբեք «ես» չեմ ասում:

**2.** Կարծում եմ, որ փողերը կարող չեն երջանկություն բերել: Անկախություն՝ այո, այն էլ՝ որոշ չափով: Ես երբեք չեմ ձգտել օգտագործել իմ բիզնեսը՝ պետության վրա ազդելու համար:

**3.** Իմ կանոնն է՝ հանգիստ նստի՛ր տեղդ և մեջ մի՛ ընկիր:

**4.** Կարծում եմ, որ ամեն ինչի հասնում են շփումների միջոցով:

**5.** Ես մեծ ջանքեր եմ գործադրել բիզնեսում հաջողությունների հասնելու համար և ուրախ եմ, որ այսօր կարող եմ զբաղվել բարեգործական ծրագրերով:

**6.** Բարեգործությունը բավական բարդ բան է: Այդ իսկ պատճառով կարևոր է գտնել ոլորտ, որտեղ դու կարող ես իսկապես օգնել ինչ-որ մեկին ու արդյունք ստանալ: Դա մի գործընթաց է, որը պրոֆեսիոնալ մենեջմենթ է պահանջում:

**7.** Փողերը, իհարկե, ֆուտբոլում կարևոր դեր են խաղում, բայց որոշիչ չեն:

**8.** Հենց ես էի Ռուսաստանում առաջին ձեռնարկատերերից մեկը:

**9.** Իմ ձեռքբերումը հիմնված է միայն հաջողության վրա:

Հարցազրույց առանց պարարտանյութերի և թունաքիմիկատների...

# «ՄԵՆՔ ԱՊՐՈՒՄ ԵՆՔ ՀԵԳՆԱՆՔԻ ԴԱՐՈՒՄ»



**«Երբ հեռուստատեսային թոք շոուների կամ որեւէ այլ հաղորդման մեջ ինքնահեգնանքի չափաբաժինը մի քիչ ավելանում է, եթերում միանգամից կյանք է հայտնվում»**

***Երեւանի Տիկնիկային թատրոնի ղեկավար, բեմադրիչ Ռուբեն Բաբայանը նախագահական ընտրություններից հետո ծավալված հասարակական ընդվզման ալիքը բարեբեր է համարում ու նշում, որ հասարակության փոփոխություն է տեղի ունենում:***

***Ըստ նրա՝ ամենաթանկն այն է, որ երիտասարդներն են ընտելանում շփման նոր մշակույթին ու վկա դառնում այն իրականությանը, որտեղ կարելի է ոչ թե սպառնալ գլուխ պոկել ու վիզ ջարդել, այլ ժպիտով բարեւել միմյանց: Եվ դրանից հետո ավելի արդյունավետ անձ զգալ իրեն:***

***Ռուբեն Բաբայանը վստահ է, որ մեր խնդիրների հիմքում թերի կրթությունն է, այդ թվում՝ նաեւ մեդիա մանիպուլյացիաներից պաշտպանվածության պակասը: 21-րդ դարը համարելով հեգնանքի դար՝ նա զրուցում է մեր հասարակության մեջ նշմարվող բարդույթների, չափազանց ծանրակշիռ կեցվածքի ու հումորից վախենալու մասին:***

**– Հիմա բոլորս կարծես աշխատում ենք որքան կարելի շատ բան լսել, տեսնել, տեղեկանալ: Արդյոք կլանվող ինֆորմացիայի քանակը համեմատակա՞ն է ներքին բավարարվածությանը:**

– Դա կրթության հարց է, որը կարծում եմ՝ շատ պարզ լուծում ունի: Պետք է կարողանալ գխավորը զատել, անջատել երկրորդականից: Եվ այդ սկզբունքն աշխատում է

**«Ֆեյսբուքը հեշտությամբ ծնում է պատրանք, որ դու սիրելի ու արժեքավոր ես (մեկ օրում ասենք, հարյուրավոր «լայքեր» ես ստանում)»:**

ամեն տեղ, ոչ միայն մեդիա արտադրանքի սպառման ընթացքում: Պետք է, օրինակ, ոչ թե գիրք կարդալ, այլ կարողանալ օգտվել գրականությունից: Հավատացնում եմ ձեզ դա շատ կարեւոր է: Կարեւոր է իմանալ, թե որտեղից, ինչպես եւ ինչ չափաբաժնով կարող ես ստանալ այն ինֆորմացիան, որը քեզ պետք կգա (եթե, իհարկե, դու նպատակաուղղված որոշել ես որեւէ գործ անել ու պիտանի ինֆորմացի ես որոնում): Սա ամենօրյա, սովորական կրթական պրոցես է:

Հակառակ դեպքում ստացվում է, որ համակարգչային սարքերի վրա ընդամենը մի քանի կոճակ ես սեղմում, ու ինֆորմացիան հեղեղի նման գալիս լցվում է քո անպաշտպան ուղեղի մեջ:

Միշտ ասում եմ, որ մեր առաջնային խնդիրը թերի կրթական համակակարգն է, հատկապես դպրոցական: Նկատած կլինեք, երեւի, թե դպրոցի ուսուցիչներն ինչպիսի ատելություն ունեն ինտերնետի հանդեպ: Շատերը գոռում են, թե ինտերնետը սպանեց գրականությունը, եւ մի պահ անգամ չեն մտածում, որ կրթությունը նաեւ տարբեր գործիքներից օգտվելու հմտություններ սովորեցնել է նշանակում:

Հաճախ ենք ասում, որ հեռուստատեսային ինֆորմացիան ուղղորդվում է իշխանությունների կողմից: Իհարկե, դա այդպես է, բայց վստահ եմ, որ նորմալ կրթություն ստացած ու ինքնուրույն մտածող մարդը շատ լավ կարող է այդ ուղղորդվող իրավիճակից դուրս գալ ու, միեւնույն է, ճիշտ ընկալել իրեն հասնող ինֆորմացիան: Առնվազն հասկանալ, որտեղ են իրեն փորձում են օգտագործել, ուղղորդու՞մ են, թե՞ ոչ:

**– Դա էլ է կրթությո՞ւն:**

– Իհարկե, կրթություն է: Ես հիմա կարծես դասական ֆրանսիական լուսավորչական ուղղության ներկայացուցչի նման բոլոր



հարցերի լուծումը տեսնում են կրթության մեջ: Մենք հաճախ ենք ասում, որ հիմա կգա ինչ-որ մեկը (ասենք՝ ընտրությունների արդյունքում) ու միանգամից կփոխի մեր կյանքի որակը: Վստահ եմ, ոչ մի փոփոխություն չի կատարվի, եթե հենց մեր հասարակությունից չբխի փոփոխության պահանջը: Իսկ հասարակությունը այդ պահանջը կարող է ներկայացնել այն ժամանակ, երբ համապատասխան կրթական ցենզ ունենա:

**– Բայց կրթված, բանիմաց մարդը բավական վտանգավոր է, թեկուզ միայն նրանով, որ կարող է անհարմար հարցեր տալ իշխանություններին: Միգուցե վտանգին դիմադրելո՞ւ համար էլ ինքնահոսի ու փտման է դատապարտվում հատկապես դպրոցը:**

– Կրթված մարդն, իհարկե, վախեցնում է շատերին: Բայց այստեղ մի մեծ պարադոքս կա. կիսագրագետ հասարակության մեջ ոչինչ անել չես կարող, այն անհեռանկար է: Հանրային կառույցների ցանկացած օղակ՝ սկսած ամենափոքրից (ասենք՝ շենքի լիազորից) վերջացրած նախավերջին օղակով, իրենց իրավունք են վերապահել ասելու. «Մեզանից ոչինչ կախված չէ, քանի որ մենք ընդամենը կատարողներ ենք, որոնցից պահանջում են վերադասները»: Լավ, ասենք՝ համաձայնեցինք, բայց հարց է առաջանում՝ իսկ ամենվերջին օղակը ո՞ւմ կարող է դա ասել:

**– Բարձրյալին երեւի...**

– Բարձրյալը հաստատ չի պահանջի անել այն, ինչ արվում է: Ամենավերեւի օղակը արդարացում չունի եւ ուզած չուզած պետք է որոշակի քայլերի դիմի: Իսկ այդ կարեւոր քայլերը հնարավոր չէ անել, եթե հասարակությունը կիսագրագետ է:

Երբ հասարակությունը երկար ժամանակ խավարի մեջ է պահվում, գալիս է մի շրջան, երբ դա սկսում է խանգարել հենց խավարը ապահովողներին, որոնք օրերից մի օր զարմանքով նկատում են, որ այլեւս ոչինչ անել չեն կարող:

**– Հայաստանում չափազանց ակտիվ հարթակ է Ֆեյսբուքը, այն, թերեւս, ամենամեծ սփռում ունեցող լրատվամիջոցն է դարձել: Նաեւ զուգահեռ հասարակություն է ձեւավորել...**

**«Բոլոր դարերում էլ հումորից սարսափելի վախեցել են տգետները, բարդույթավորված մարդիկ ու երեւույթները»:**

– Միամտություն է, երբ թվում է, որ վիրտուալ տարածքը քեզ շրջապատող ամբողջ աշխարհն է, որը դու ինքդ ես ընտրում, ձեւավորում ու խմբագրում: Ֆեյսբուքը հեշտությամբ ծնում է պատրանք, որ դու սիրելի ու արժեքավոր ես (մեկ օրում, ասենք, հարյուրավոր «լայքեր» ես ստանում):

Բայց շատ կարեւոր է հիշել, որ ամբողջ աշխարհը նաեւ այն հատվածն է (եւ բավական մեծ հատվածը), որը քեզ հետ չի շփվում, քեզ հետ համաձայն չէ, իսկ որոշ դեպքերում նաեւ դեմ է քեզ:

Ընդհանրապես ուրիշներին հասկանալու (մանավանդ, երբ նրանք լրիվ հակառակ հայացքներ են արտահայտում) ու նրանց հետ ընդհանուր լեզու գտնելու կարողությունը շատ թանկ է: Կարծում եմ՝ հստակ է՝ եթե փորձում ենք իրար հասկանալ, առաջընթաց է տեղի ունենում, իսկ հենց դադարում ենք իրար հասկանալ, դեպի պատերազմ ենք գլորվում: Ընդ որում՝ պատերազմներում կրակոցները պարտադիր չեն, կարող ենք հարեւաններով, ընկերներով, բարեկամներով, քույրերով ու եղբայրներով պատերազմի մեջ հայտնվել: Անարդյունավետ մի պատերազմի...

Իսկ ինչպես գիտենք, պատերազմների ժամանակ երեխաներ չեն ծնվում: Երեխաները ծնվում են սիրո արդյունքում:

**– Դուք ղեկավարում եք հայաստանյան ամենակենսունակ թատրոններից մեկը, որը ոչ միայն մանուկների, այլեւ մեծահասակների**

➲7

**«Մեր առաջնային խնդիրը թերի կրթական համակարգն է, հատկապես՝ դպրոցական: Նկատած կլինեք երեւի, թե դպրոցի ուսուցիչները ինչպիսի ատելություն ունեն ինտերնետի հանդեպ»:**

**հետ զրուցելու թեմաներ է գտնում:**

**Հետաքրքիր է՝ ինչո՞ւ է մեր թատրոնը կարծես միշտ ուշանում՝ չփորձելով մտահոգիչ ակտուալ թեմաները բեմական նյութ դարձնել, ասենք, թեկուզ քաղաքական դոկումենտալ ժանրի միջոցով: Ի վերջո, բեմը ոչ միայն ամենահին, այլեւ ժամանակակից լեզվով ասած՝ online ռեժիմով աշխատելու ներուժ ունեցող մեդիահարթակ է:**

– Թատրոնը պետք է լինի տարբեր: Իհարկե, մենք ունենում ենք հաջողված ներկայացումներ, բայց դրանք մթնոլորտ ստեղծող չեն: Համաձայն եմ, որ հասարակության ներսում կատարվող պրոցեսները անտարբեր չպիտի թողնեն թատրոնը: Կարծում եմ՝ խնդիրն այն է, որ թատրոնը հուզող թեմաներին արձագանքելու գեղարվեստական ձեւը չի կարողանում գտնել: Թատրոնը արագ արձագանքման խումբ կամ մասմեդիա չէ, նրա լսարանը շատ ավելի փոքր է, քան ցանկացած օրաթերթի ընթերցողների քանակը:

Եվ հետո էլ, եթե թատրոնը սկսի արձագանքել իրականությանն այնպես, ինչպես, ասենք, օրաթերթը, այն մրցակցությանը չի դիմանա: Թերթը, հեռուստատեսությունը կամ ինտերնետային լրահոսը նույն գործը կանեն ավելի լավ եւ արագ: Թատրոնը փոքրինչ ավե՛լի խորը հայացք նետելու կարիք ունի: Չէ՞ որ թատրոն գալով՝ հանդիսատեսն ուզում է նաեւ էսթետիկական հաճույք ստանալ, երկխոսության մեջ մտնել:

Ի վերջո, չմոռանանք, որ թատրոնի ֆունկցիաներից մեկն էլ դիտողի ստեղծագործական ջիղը արթնացնելն է: Ամենամաքուր արվեստն, օրինակ, երաժշտություն է, քանի որ եթե այն լափ է, լսողին անպայման մղում է ստեղծագործելու: Ընդ որում՝ երաժշտության հեղինակի հետ համահավասար ստեղծագործելու:

Ամեն դեպքում կարծում եմ, որ պլակատային թատրոնը այնքան էլ թատրոն չէ: Սովետական ժամանակ ասում էին՝ առավոտյան թերթում, երեկոյան կուպլետում (այսինքն՝ բեմից կատարվող երգերում): Նման թատրոն յուրահատուկ թատրոն, իհարկե, կարող է գոյություն ունենալ, բայց իսկական թատրոնը ավելի խորը զրույցի հարթակ է:

**– Պլակատային թատրոնի դերը հիմա բավական հաջող կատարում են հումորային գրառումները, դեմոտիվատորները, մեմերը, ծաղրական ֆոտոկոլաժները, որոնք հայտնվում են հիմնականում մեդիայում ու սոցցանցերում ու հետո ակտիվորեն շրջանառվում առօրյայում: Տպավորություն է, որ ստեղծագործելու ջիղը հումորով է արտահայտվում:**

– Հումորն ընդհանրապես հիանալի բան է: Իսկ ձեր նշած բոլոր օրինակները կարծում եմ՝ ժամանակի պահանջ են: Ընդհանրապես 21-րդ դարը հեգնանքի, իրոնիայի դար է: Եվ դա



շատ լավ է: Բոլոր նրանք, ովքեր չափից ավել լուրջ են վերաբերվում սեփական անձին, սեփական ազգի գաղափարախոսությանը, այսպես ասած՝ վերեւից հրահանգված ճիշտ ուղուն, ծիծաղ են առաջացնում եւ մեծ իմաստով առաջխաղացում չեն ունենում: Եվ հակառակը՝ եթե այդ ամենին իրոնիայով են նայում, շատ ավելի արդյունավետ են որպես անձնավորություններ: Հումորը բուժիչ հատկություն է, եւ բոլոր դարերում էլ հումորից սարսափելի վախեցել են տգետները, բարդույթավորված մարդիկ ու երեւույթները:

Հումորը արտակարգ հատկություն է, հատկապես՝ երբ այն ուղղված է դեպի ներս:

Նկատելի է, որ շատերը Հայաստանում դժվար են դիմանում հումորի փորձությանը, մանավանդ այն մարդիկ, ովքեր, ըստ իրենց, որոշակի դիրքի են հասել: Նրանք ոչ միայն հումորը, այլեւ թեթեւ կյանքը տանել չեն կարող: Թեթեւ ասելով՝ նկատի ունեմ թեթեւությունը սեփական հագուստի, վարվելաձեւի, անձի հանդեպ: Նրանց թվում է, որ որքան ծանր ներկայանան, այնքան մեծ արժեք կունենան: Եթե նրանցից հանենք կոստյումները, փողկապը, նաեւ տակը դրված աթոռն ու թողնենք մերկ, շատ արագ կհամոզվենք, որ նրանք գրոշի արժեք չունեն: Այդ պատճառով էլ բոլորը պինդ բռնվում են իրենց «ծանրությունից» ու ծանր-ծանր բառեր են ասում:

Կարծում եմ՝ հումորը աստվածային հատկություն է: Երբ ասում ենք, որ Աստված իր նմանությամբ է ստեղծել մարդուն, հիշենք նաեւ, որ հումորի զգացումը միայն մարդուն է տրված: Մարդուց բացի որեւէ այլ կենդանի էակ այդ զգացումը չունի: Կենդանիները կարող են մտածել, երեւակայել, անգամ խոսել, բայց ունակ չեն իրենց շրջապատող աշխարհին ու իրենք իրենց հումորով վերաբերվել: Դա միայն մարդուն է տրված, հետեւաբար դա աստվածային շնորհ է:

**– Մեր կյանքում դեռ շարունակում է մեծ դեր խաղալ հեռուստատեսությունը: Չե՞ք կարծում, որ այն, հենց ձեր նշած ծանրակշիռ ու հաստակաշի կերպարները շրջանառության մեջ դնելով, հաճախ ինքն է ծաղրի առարկա դառնում: Այն հին չէ՞:**

– Մեր հեռուստատեսությունը միանշանակ շատ հին է, այդ դաշտում ոչ միայն հումորը, այլեւ շատ-շատ այլ կարեւոր բաներ են պակասում: Հեռուստատեսությունն աշխատում է այնպես, կարծես ինտերնետ գոյություն չունի: Իհարկե, հետաքրքիր հաղորդումներ, այսպես ասած՝ կղզյակներ, հանդիպում են այնպես, ինչպես մեր հասարակության մեջ են հանդիպում փոքրիկ առողջ կղզյակներ (օրինակ՝ բնապահպանական, ճարտարապետական ձեւախեղումների, օտարալեզու դպրոցների տարածման դեմ պայքարող խմբերը):

Նկատել եմ նաեւ, որ հենց որ հեռուստատեսային թոք շոուների կամ որեւէ այլ հաղորդման մեջ ինքնահեգնանքի չափաբաժինը մի քիչ ավելանում է, եթերում միանգամից կյանք է հայտնվում:

Բայց մենք ընդհանրապես ծանր ենք, եւ դրա պատճառը բազմաթիվ բարդույթներն են: Մեկը ասում է՝ մենք 5 հազար տարվա պատմություն ունենք, մյուսը հակադարձում է՝ ոչ, մենք 10 հազար տարվա պատմություն ունենք: Եվ բոլորն այդ հազարամյակների բեռը իրենց վրա են կրում ու ծանր-ծանր քայլում են աշխարհով: Բայց եթե հանկարծ որեւէ մեկը փորձի ոչ թե այդ հսկայական բեռը, այլ ինքն իրեն տանել, միանգամից կհամոզվի՝ որքան թեթեւ ու հեշտ է քայլում:

Ընդհանրապես պետք չէ այս հողը, այս երկիրը ծանրացնել սեփական գոյությամբ, քեզ շրջապատող մարդկանց վզին փաթաթել սեփական ներկայությունն ու անել այնպես, որ շրջապատը երազի մեզանից ազատվելու ու առանց մեզ հանգիստ շնչելու մասին:

**«Բոլոր նրանք, որոնք չափից լուրջ են վերաբերվում սեփական անձին, սեփական ազգի գաղափարախոսությանը, այսպես ասած՝ վերեւից հրահանգված ճիշտ ուղու հանդեպ, ծիծաղ են առաջացնում եւ մեծ իմաստով առաջխաղացում չեն ունենում»:**

Թվում է՝ հասարակ բաների մասին ենք խոսում, բայց իրականում քչերս ենք պատկերացնում, թե ինչպիսի տպավորություն ենք թողնում նորմալ մարդկանց վրա: Եվ, առավելեւս, այն ժամանակ, երբ մեդիայի ուշադրությանն ենք արժանանում եւ այսպես ասած՝ խոշորացույցի տակ ենք հայտնվում: Ի վերջո, կարող ենք նաեւ ժպտալ, ինքներս մեզ հեգնել (նաեւ ձեռ առնել), պակաս նշանակություն տալ սեփական կեցվածքին:

**– Նաեւ բարեւե՞լ պատահական անցորդներին:**

– Գիտեք՝ես շատ ուրախ եմ, որ այս քաղաքական նորամուծությունը մտավ մեր կյանք որպես վարվելաձեւ, որպես շփման կիրթ մոդել: Բոլոր ընտրությունների ժամանակ մենք լսել ենք, որ թեկնածուները միմյանց սպառնացել են, վիրավորել, իսկ հիմա բոլորովին այլ մշակույթ ներմուծվեց: Եվ պարզվեց, որ դա շատ էլ արդյունավետ է, քանի որ իրար հանգիստ նայող մարդիկ շատ ավելի արդյունավետ կարող են լուծել ծագող խնդիրները, քան եթե իրար սպառնան գլուխ պոկել ու վարկաբեկել:

Վստահ եմ՝ ինքն իրեն հեգնելու պատրաստ մարդը ոչ կկառչի իր աթոռից, ոչ էլ արագորեն դրանից վայր կընկնի:

Էլի եմ ասում՝ Աստված թեթեւ է, հումորով:

**– Հումորով էլ արարե՞լ է աշխարհը...**

– Առանց հումորի բա այսպիսի աշխարհ կստեղծե՞ր...

Դերասանուհի Ֆաինա Ռանեւսկայան մի հաճարեղ խոսք ունի, ասել է՝ ես այնքան խելացի էի, որ կարողացա կյանքս թեթեւ ապրել:

***Հարցազրույցը՝ Նունե ՀԱԽՎԵՐԴՅԱՆԻ***
***Լուսանկարը՝ Հակոբ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ***

# Ովքեր են տեղական արտադրության առանցքային դեմքերը



**Հայաստանի անկախացումից ի վեր անհրաժեշտություն կար, որպեսզի տեղական արտադրություն հիմնվեր, լինեին մարդիկ, ովքեր զարկ կտային տեղական արտադրությանը և իրենց ուսերին կվերցնեին այդ ծանր ու բավականին պատասխանատու գործը:**

**Այսպիսով Ձեզ ենք ներկայացնում այն գործարարներին, ովքեր հիմք դրեցին տեղական արտադրանքին և կարողացան այն նաև արտահանել արտերկիր:**

**1. Հրանտ Վարդանյանն** իր երկու որդիների՝ Միքայելի և Կարենի հետ միասին Հայաստանում ձևավորեցին ևս խոշոր բիզնես մի ընտանիք իրենց վրա վերցնելով որոշակի բիզնես ճյուղեր ծխախոտագործություն, հրուշակեղենի զարգացում և այլն: Սովետական միությունից հետո փլուզված այս երկու ոլորտները հենց այս ընտանիքի շնորհիվ է, որ այսօր վերածնունդ են ապրում: Այսօր Միքայել Վարդանյանի շնորհիվ «Գրանդ Տոբակո» և «Մասիս Տոբակո» ընկերությունների արտադրանքը մեծ ծավալով արտահանվում է արտերկիր, իսկ Կարեն Վարդանյանի շնորհիվ Հայաստանում և Հայաստանից դուրս բավականին մեծ հեղինակություն է վայելում հայկական հրուշակեղենը՝ «Գրանդ Քենդի» անվանմամբ:

Այս ընտանիքը կարողացավ տեղական արտադրությունը փրկել կործանումից ու նոր մակարդակի վրա դրեց այդ արտադրությունը:

**2. Մաքսիմ Հակոբյան** – Այն, որ Հայաստանը հարուստ է հանքերով, դա փաստ է: Ակնհայտ է նաև, որ պետք է լիներ մարդ, ով կարող էր ոտքի հանել այդ ճյուղը: Այդ պատասխանատու գործն իր վրա վերցրեց Մաքսիմ Հակոբյանը, ում որդիները ևս գնացին հոր ճանապարհով՝ զարկ տալով տեղական արտադրությանը: Մաքսիմ Հակոբյանն իր երկու որդիների՝ Վահե և Արման Հակոբյանների գլխավորությամբ հսկայական դեր կատարեց հանքարդյունաբերության բնագավառում: Անկախությունից հետո կաթվածահար եղած հանքարդյունաբերությունն այս ընտանիքի շնորհիվ է, որ կարողացավ ոտքի կանգնել և այսօր «Զանգեզուրի» պղնձամոլիբդենային կոմբինատը, այս ընտանիքի գլխավորությամբ, Հայաստանի ամենախոշորագույն հարկատուներից մեկն է և կարողանում է հսկայական սոցիալական խնդիրներ լուծել հանրապետության ներսում՝ պետական գանձարան վճարելով խոշոր չափի հարկեր: Բացի այս Հակոբյանների ընտանիքը Սյունյաց աշխարհում ներդրեցին և ստեղծեցին նոր աշխատատեղեր. մասնավորապես՝ կաթի վերամշակման, երշիկի արտադրության, ինչպես նաև քարի վերամշակման գործարաններ, հանքային ջրերի գործարաններ:

**3. Մարատ Ջանվելյան** – Փլուզված գյուղատնտեսական ավերակների վրա պետք է վեր խոյանար նաև անասնապահության ոլորտը, որը բավականին բարդ աշխատանք էր: Այդ ոլորտը փրկեց Մարատ Ջանվելյանը: Նրա գործունեության շնորհիվ էր, որ հայ սպառողը կարողացավ օգտվել տեղական արտադրության թարմ ու անարատ սննդամթերքից: Ինչպես վերոնշյալ դեպքերում, Ջանվելյանի դեպքում ևս որդին շարունակում է հոր գործունեությունը և զարկ է տալիս միայն տեղական արտադրությանը:

***Հ. Գ.*** – Հետաքրքրական է, որ այս 3 ընտանիքները տեղական արտադրության պահապաններն են, ու դա անցնում է ժառանգաբար հայրերից որդիներին: Այս 3 ընտանիքներն էլ այն մարդիկ են, ովքեր լիարժեքորեն ծաղկացրին տեղական արտադրության ոլորտը: Եվ կարծում ենք, որ շատ շուտով պետությունը կարևորելով նրանց գործունեությունը, իր պատասխան շնորհակալությունը կհայտնի և բարձր կոչումներով կպարգևատրի այս մարդկանց, քանզի նրանք տեղական արտադրության հիմնադիրներն են:

***Slaq.am***

# Աշխարհի ամենահարուստ մարդու 10 բիզնես կանոնները



**Աշխարհի ամենահարուստ մարդը՝ Կարլոս Սլիմ Էլուն, բացահայտել է իր հաջողության գաղտնիքները: Ինչպես գրում է luxlux.net կայքը, նա առանձնացրել է 10 կարևոր կետ:**

**1.** Բիզնեսմենը բարոյական իրավունք չունի զբաղվելու միայն բիզնեսով: Դուք պետք է շատ հետաքրքրություններ ունենաք, չէ որ դա տալիս է իմանալու, սովորելու, զգալու բազմաթիվ հնարավորություններ:
**2.** Ես կարծում եմ՝ բիզնեսմենները ռեսուրսների կառավարման առավել շատ փորձ ունեն, այդ իսկ պատճառով նրանց համար ավելի հեշտ է լուծել խնդիրները, քան քաղաքական գործիչների համար:
**3.** Եթե դուք մշտապես կախված եք ուրիշների կարծիքից, դուք մեռած եք: Ես չեմ ուզում ապրել՝ ամբողջ օրը մտածելով՝ ինչպես կհիշեն ինձ:
**4.** Գործե՛ք փոքր և ոչ մեծ սխալներ:
**5.** Ես չեմ հավատում, որ որևէ բիզնեսով զբաղվելով՝ դուք պարտադիր պետք է ամեն օր 15-16 ժամ աշխատեք: Այդ դեպքում դուք ինքներդ ձեզ համար ժամանակ չեք ունենա:
**6.** Բիզնեսմենը հարստություն ստեղծող է, որին նա միայն որոշ ժամանակով է տիրապետում:
**7.** Իմ միտքը հստակ է՝ կրկին ներդնել:
**8.** Հաջող անձնական կյանքը ձեզ ավելի ուժեղ է դարձնում:
**9.** Ես կարծում եմ, որ աշխատանքը ոչ միայն սոցիալական պատասխանատվություն է, այլ էմոցիոնալ պահանջ:
**10.** Լավատեսությունը միշտ տալիս է իր արդյունքը:

# Սամվել Կարապետյան եւ Քըրք Քրքորյան



Այս երկու գործարարներն էլ իրենց ունեցվածքը ձեռք են բերել հայրենիքից հեռու` մեկը Միացյալ Նահանգներում, մյուսը` Ռուսաստանում: Նրանք երկուսն էլ Հայաստանին մեծ թվով նվիրատվություն են անում և կանգնած են իրենց երկրի կողքին: Մասնավորապես` Քըրք Քրքորյանը «Լինսի» հիմնադրամի միջոցով հսկայածավալ գումարներ է ներդրել, որի արդյունքում էլ ստացել է Ազգային հերոսի կոչում: Իսկ Սամվել Կարապետյանը հսկայական ներդրումներ է անում ՀՀ-ում, Արցախում, ինչպես նաև բարեգործական օգնություն է հատկացնում և վստահ ենք, որ նա էլ մեկ օր կարժանանա Ազգային հերոսի կոչման: Խնդիրը նրանում է, որ երկու խոշոր գործարարներն ու բարերարներն ունեն մեկ տարբերություն. այն կայանում է նրանում, որ Քըրք Քրքորյանն ապրելով և մեծանալով ԱՄՆ-ում` դարձել է ԱՄՆ-ի իրական քաղաքացի ինչպես անձնագրով, այնպես էլ հոգեբանությամբ: Նա իր ամբողջ գործունեությունը` կառուցում է Միացյալ Նահանգների տրամաբանությամբ. այսինքն` նրա համար հայկական գործոնը սեփական բիզնեսի զարգացման պրոցեսում կարևոր չէ, ինչը չի կարելի ասել Սամվել Կարապետյանի մասին:

Ուսումնասիրելով Սամվել Կարապետյանի գործունեությունը ՌԴ-ում` պարզ է դառնում, որ նա բիզնես ծավալելու ճանապարհին առաջին հերթին կարևորություն է տալիս հայկական գործոնին:

Սամվել Կարապետյանի ընկերությունները հնարավորության դեպքում նախևառաջ փորձում են համագործակցել հայկական ընկերությունների հետ. այսինքն` հնարավորություն են տալիս, որպեսզի հայկական ընկերությունները «Տաշիր Գրուպ»-ի աշխատանքները իրականացնելով` ևս հսկայական գումարներ աշխատեն: Ուսումնասիրելով «Տաշիր Գրուպ» ընկերությունը, որը իրենից ներկայացնում է հսկայական աշխատանք կարելի է տեսնել, որ այնտեղ մեծ մասը ազգությամբ հայեր են: Ի տարբերություն Քըրք Քրքորյանի, Սամվել Կարապետյանը ստեղծել է ոչ միայն սեփական, այլ նաև հայկական բիզնես-համակարգը. այսինքն նրա ընկերությունների զարգացումն ու նրա ընկերությունների ապագան անմիջապես բխում է ոչ միայն Կարապետյանների ընտանիքի, այլ նաև հայ մարդու շահերից: Բոլոր ՀՀ քաղաքացիները, ովքեր ապրում են Ռուսաստանում և ունենում են աշխատանքի խնդիր, հնարավորության դեպքում Սամվել Կարապետյանն աջակցում է նրանց: «Տաշիր Գրուպ»-ը, որը բավականին հսկա ընկերություն է Ռուսաստանում, դարձել է յուրատեսակ մի ընտանիք, որը Սամվել Կարապետյանի գլխավորությամբ համախմբում և տեր է կանգնում այն հայերին, ովքեր հեռանում են հայրենիքից` Ռուսաստանում սեփական ընտանիքի բարեկեցությունն ապահովելու համար: Շատ կարևոր է նաև այն, որ այս ընկերությունը ոչ միայն Հայաստանում գումարներ է նվիրաբերում, այլ նաև գումարներ ներդրում Հայաստանի տնտեսությունում:

**Հ.Գ.** Այս համեմատությունը բնավ նպատակ չունի մեծարել Սամվել Կարապետյանին կամ քննադատել Քըրք Քրքորյանին: Մենք փորձեցինք ներկայացնել, թե ինչպես կարելի է բիզնես կազմակերպել հայրենիքից դուրս, բայց դրա հիմքում դնել ոչ միայն փող աշխատելու կամ զերշահույթներ ունենալու, այլ նաև սեփական հայրենիքին ու ժողովրդին ծառայելու նպատակը:

**Slaq.am**

# Ինչպե՞ս դառնալ միլիոնատեր. Ռիչարդ Բրենսոնի խորհուրդները

«Virgin» ընկերության հիմնադիր, միլիոնատեր Ռիչարդ Բրենսոնը «Forbes» ամսագրին պատմել է իր հաջողության գաղտնիքի մասին և խորհուրդներ տվել միլիոնատեր դառնալ ցանկացողներին:

**1.** Ով իրեն նախաձեռնող է համարում, բայց սխալներ թույլ չի տալիս, ձեռնարկող չէ:

**2.** Կյանքում անխուսափելի երկու բան կա` մահ և հարկեր: Հիշե՛ք, որ բիզնեսի ոլորտում միայն մի բանում կարելի է համոզված լինել. մի օր ամեն ինչ ծրագրվածին չի համապատասխանի:

**3.** Ես բիզնեսին մշտապես վերաբերել եմ ինչպես հաճելի զբաղմունքի: Երբեմն ես մոռանում եմ` որտեղ է ավարտվում աշխատանքը և որտեղ է սկսվում հանգիստը:

**4.** Ես ուրախանում եմ, երբ ինձ վատ են սպասարկում: Մի՛ կարծեք ես մազոխիստ եմ: Պարզապես իմ լավագույն բիզնես-մտահղացումները ծնվում են հենց այն ժամանակ, երբ ինձ վատ են սպասարկում:

**5.** Ես մշտապես պատրաստ եմ լսել ուրիշների կարծիքները և առաջարկներ ընդունել, որոնք ավելի լավն են, քան իմը: Այդ հատկանիշը ինձ մշտապես օգնել է 40 տարի բիզնես ծավալելիս:

**6.** Բիզնեսում պահպանողական մտածելակերպն առհասարակ տեղ չունի, այն ձեզ ավելի է թուլացնում և հնարավորություն չի տալիս գնահատելու փաստերը, այն պարզապես սպանում է քեզ:



**7.** Ես հավատացած եմ` թույլ չպետք տալ, որ «չի կարելի» բառը կանգնեցնի ձեզ:

**8.** Ինձ համար ավելի վատ բան չկա, քան աշխատատեղի փոխարեն աշխատողների ներողությունը:

**9.** Ես միշտ փորձել եմ հեռու մնալ գրասենյակներից. իմ սիրելի աշխատավայրը տունն է կամ էլ նավակը: Հիշե՛ք` որևէ մեկը չի զղջացել գրասենյակում քիչ ժամանակ անցկացնելու համար:

**10.** Յուրաքանչյուր ընկերությունում ցանկացած տիպի ղեկավար պետք է ժամանակ առ ժամանակ հանի իր կոստյումն ու «կեղտոտի ձեռքերը»:

**11.** Եթե նոր բիզնես եք սկսում և ինձնից խորհուրդ եք հարցնում, ես ասում եմ. «Ազնվություն ցուցաբերե՛ք ցանկացած գործարքի կնքման ժամանակ: Խարդախություն մի՛ արեք, մի՛ ձգտեք հաղթանակի»:

**12.** Ցանկացած պարագայում ես ցանկանում եմ հասնել հետևյալին` տեր լինել տվածս ցանկացած խոստմանը:

**13.** Բիզնեսը կոչված է մարդկանց կյանքը լավացնելուն և նրանց հարստացնելուն: Հակառակ դեպքում չարժե դրանով զբաղվել:

**14.** Առաջնորդի հատկանիշները դրսևորվում են այն ժամանակ, երբ կարողանում ես հանգիստ ու պարզ բացատրել` ինչու է ընդունվել այս կամ այն որոշումը:

**15.** Փողը հաջողության վատ ցուցիչ է: Ավելի վատ միայն ձանաչվածությունն է:

**Հ.Գ. Մի՛ զբաղվեք գործով, որը ձեզ դուր չի գալիս:**

## *Մեր երիտասարդ արվեստագետները*

# Ռուբեն Սուվարի

## Ստեղծում եմ իմ հեքիաթը, իմ նկարագրությամբ



**Արվեստի լավ գործը մնում է լավ՝ անկախ իր տեսակից, ժանրից, չափից ու կատարման տեխնիկայից:**

*Մարտիրոս Սարյան*

**Ռուբեն Սուվարի** (Ռուբեն Միհրանի Սուվարյան), յուրովի աշխարհընկալմամբ շնորհալի ստեղծագործող, որի գեղանկարչական խոսքի ուժը ծնունդ է առնում իբրև ներքին մղում, արվեստասերին ներկայանում ոճային բազմազանությամբ, նոր արտահայտչական միջոցներով հաղորդակից դարձնում իր խոհերին: Նրա գեղարվեստական խառնվածքին բնորոշ է նորը հայտնաբերելու ծարավը, որը վկայում է տաղանդաշատ նկարչի ստեղծագործական պոտենցիալի մասին:

– Ընդամենը մի սև գույնով փորձում է ներկայացնել իր ասելիքը, ինչը շատ բարդ է…

**Նրա աշխատանքներում յուրաքանչյուրը կարողանում է գտնել իր բաժին աշխարհը: Ռուբեն Սուվարու գրաֆիկայի լեզուն հասկանալ է պետք. այն լակոնիկ է, զուսպ, զուրկ ավելորդություններից:**

*Կառլեն Քոչինյան*
*Գեղանկարիչ, ՀՀ նկարիչների միության անդամ*

Սուվարի-նկարիչը, որ ազատ է իր արվեստում, ինքն է իր համար սահմանում ստեղծագործելու իր «օրենքները» և ենթարկվում դրանց: Իր տասնյակ կտավների կողքին մի ուրույն աշխարհ է հոգևոր թեմաներով ստեղծված նկարների շարքը («Հավատքի կաթիլ», «Վայ քեզ երկիր, որ թագավորը մանուկ է», «Հայոց խիղճը», «Հոգևոր սնունդ»), որի խորհուրդն ու մաքրությունը պղտորված չէ աշխարհիկ կյանքով: Եվ դրանք արվեստասերիս համար հոգևոր մաքրության դռներ են:

– Փորձում եմ զուգահեռներ անցկացնել մարդու և եկեղեցու, հավատքի միջև:

Սուվարին ձգտելով ստեղծել իրենը, իր հեքիաթը, մեկ անգամ ևս մեզ համոզում է, որ ամեն մի արվեստագետի ինքնությունը իր անհատականությունն է, իր դեմքը:

**- Մեկնարկային ծիրում գտնվող նկարիչ Ռուբեն Սուվարին, ով ինքնահաստատվում է ոչ միայն ստեղծագործական ոլորտներում, այլև արդեն ուրույն ոճ ու ասելիք ունեցող արվեստագետի այցետոմս է ներկայացրել:**

**Մարդու և հավատքի կապը, արարչականի և ձեռակերտի, հոգևորի ու նյութականի համադրումները սյուժետային հենք լինելով, երևակվում են կոմպոզիցիոն մոդեռն հնարքներով և ամբողջության մեջ հառնում որպես գեղագիտական ներկայացում:**

*Սամվել Խալաթյան*
*ՀՀ Մշակույթի վաստակավոր գործիչ, արվեստաբան*

Գեղանկարչի գործերը ինքնատիպ են, ոչ միայն ստեղծագործական առումով, այլև արտահայտչաձևերով, մտածողությամբ: Իրենց տեսակով նորովի են, խորհրդավոր, քնաթարգմանը իր իսկ ստեղծած կտավների ակտիվ լեզուն է:

Ռուբենի համար ինչ է նշանակում նկարել:

- Արարել:

Իսկ այդ արարման բերկրանքը նրա համար իսկապես խենթացնող զգացում է:

- Նկարել, ասել է թե՝ ապրել, զգալ, տենչալ, ձուլվել քո «եսին»: Նկարել, նշանակում է զգալ կյանքը և վերջապես ... տրվել կյանքին:

**– Նայում ես կտավներին և ակամայից մտովի տեղափոխվում մեկ բնության մեջ, մեկ էլ քեզ զգում ես այնտեղ, որտեղ բացվում և ընդհանրանում է արվեստի գեղգեղուն հորիզոնը՝ ցանկանալով ընդմիշտ մնալ արվեստառատ սուվարիական աշխարհում:**

**Հիրավի, այն գործերում, որ նկարիչը իր համեստությամբ խորագրել է «Աստծու որոնելիս», մի ամբողջ երկրային ու երկնային երևույթների մշտամնա կապ է հյուսված Մշո երգերով և մինասյան խղճով:**

*Իվան Անտոնյան*
*«Մաշտոց» հանդեսի գեղարվեստական խմբագիր*

Արվեստի ճշմարիտ երկի հիմքում պետք է ընկած լինի բոլորովին նոր միտք, նոր զգացում: Սրանք գերմանացի մեծ երգահան Ռիխարդ Վագների խոսքերն են, ասված դեռ մեկուկես դար առաջ: Բայց երբ նայում ես դիմանկարիս հերոսի աշխատանքներին («Սիրո ծնունդ», «Արեգակն արդար», «Սեր սիրո սրտանց», «Հավատքի ծնունդ», «Ժամանակից դուրս», «Դեպի ուր», այս և նմանատիպ երկու այլ գրաֆիկական աշխատանքները «Միգրացիան մեր աչքերով» նկարների ցուցահանդես-մրցույթում, որ կազմակերպվել էր «People in need» հայկական մասնաճյուղը՝ ՄԱԿ-ի հայկական ասոցիացիայի հետ համատեղ, արժանացել են առաջին մրցանակի), էլ ավելի ես համոզվում այդ խոսքերի իրավացիությանը:

Մտահորիզոնը բազմաշառավիղ է, այսպիսի կարծիք ուներ նրա մասին նաև լոռեցի մեծ նկարիչ Խաչիկ Ղարաբեկյանը, ում արվեստանոցում թրծվել, առնականացել է՝ նվիրելով իրեն արվեստին:

Երիտասարդ արվեստագետի աշխատանքներում մերթընդմերթ գիծը դառնում է պատկեր՝ արտահայտելով հայի կենցաղը,





➲ 11

ԷՋ 10











մշակույթը, եկեղեցին: Նկարչի գրչերգերը մեվի անդրադարձ են հայոց բազմադարյա պատմությանը: Հաճախ տառեր է նկարում իր պատկերներում, միևնույն ժամանակ կենտրոնում գամելով Քրիստոնեության խորհրդանիշը՝ ԽԱՉԸ: Կտափներից բխում է հայ ժողովրդի լինելիությունը ու ավելի է հասկացվում, որ մենք՝ հայերս, ավելի խորարմատ ենք, քան պատկերացնում ենք:

Հավելեմ, որ Սուվարին բազմաթիվ ցուցահանդեսներով ներկայացել է արվեստասեր հասարակությանը և Լոռիում, և Երևանում, և Գյումրիում: Նկարչի աշխատանքներին բավականին տպավորիչ վերլուծականներով անդրադարձել են և տեղական, և հանրապետական մամուլում:

Գեղանկարիչն այսօր էլ ապրում է ստեղծագործական բեղուն շրջան: Լավատես է ստեղծագործական իրեն յուրահատուկ տարերքի լույսով՝ բոլորիս հավաստիացնելով.

– Ես ստեղծում եմ իմ աշխարհը, իմ գույներով, իմ նկարագրությամբ...

Համոզված ենք, որ չնայած երիտասարդ տարիքին, Սուվարին արդեն ունի կայուն ստեղծագործական հիմք և, անշուշտ, տեսանելի են նաև ստեղծագործական լուրջ հեռանկարները:

Ցանկանք և հավատանք, որ տաղանդաշատ գեղանկարչի երթի շարունակությունը լինելու է էլ ավելի շռայլ ու արգասավոր:

***Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# Մայոր Ղուլյան. «Մեր տան լույսին շատ նայող կա»

Վեց տարեկան էի, երբ հայրս զոհվեց: Ինձ՝ երեխայիս համար, սովորական օր էր, բայց մեր տան ելումուտից, տղամարդկանց դեմքի այլայլված արտահայտությունից, կանանց լացակումած աչքերից հասկանալի էր, որ արտակարգ բան է պատահել: Նաև մերոնց՝ տատիս, մայրիկիս, հորաքույրերիս զուսպ ողբից հասկանում էի, որ մեծ դժբախտություն է պատուհասել մեր գերդաստանին:

Մեր գյուղի՝ Խնձորեստանի հայրական պապիս տանը զինվորական հանդերձանքով մարդիկ հաճախ էին հյուրընկալվում: Հայրս ընկերների հետ դիրքերից իջնելիս հաճախ կարճատև դադար էին առնում Հմայակ պապիս հարկի տակ, համտեսում Արփենյա տատիս եփած ճաշերն ու թխած անուշաբույր թոնրահացը և նորից գնում իրենց գործին: Աչքերս բացել եմ, թե չէ՝ զինվորականներ եմ տեսել, քաջ ու առնական: Իմ մանկական աշխարհը այդ միջավայրում է ձևավորվել: Ես որպես մարդ ձևավորվել եմ այդ միջավայրում՝ հայրենիքի, հայրենի հողի, ծննդավայրի, պատերազմի, զենքի, պատվի, արժանապատվության մասին խոսակցություններում ու զրույցներում: Ես այդ ժամանակ վեց տարեկան էի, բայց այդ խոսակցությունները շատ լավ եմ հիշում:

Երբ կռիվները թեժացան, ռազմական գործողությունները սաստկացան, հայրիկս որոշեց, որ մեր ընտանիքը պետք է տեղափոխվի Խնձորեստան՝ պապիկիս մոտ: Եվ երբ մայրիկս հարցրել է՝ ինչո՞ւ, նա պատասխանել է՝ մեր տան լույսին շատ նայող կա: Քանի տարի է անցել այդ օրվանից. շատ դժվարություններ պիտի տեսնեի, որբություն քաշեի, շատ բաների միջով անցնեի, որ հասկանայի ՀՈՐՍ ասածի իմաստը:

Տան մեծը ես եմ և կրում եմ վաղամեռիկ հորեղբորս անունը՝ Արթուր, միջնեկ եղբայրս՝ Հմայակը, կրում է հայրական պապիս անունը: Նա նույնպես զինվորական գործի մեջ է՝ սովորում է Հունաստանի բարձրագույն զինվորա-կան հաստատություններից մեկում և որոշել է զինվորական բժիշկ դառնալ: Կրտսեր եղբայրս՝ Բեկորը, որ ծնվել է հորս զոհվելուց հետո, այսօր ծառայում է ազգային բանակում: Պարտադիր զինվորական ծառայությունից հետո գուցե նա էլ մնա և ծառայությունն արդեն այլ կարգավիճակով շարունակի զինված ուժերում: Այս պահին երեք եղբայրներով էլ զինվորական գործի մեջ ենք: Երեքս էլ սովորել ենք մեր հայրիկի անունը կրող դպրոցում: Ես գեներալ-լեյտենանտ Քրիստափոր Իվանյանի անվան ռազմամարզական վարժարանի առաջին շրջանավարտներից եմ:



2003 թ. ավարտեցի Վ. Սարգսյանի անվան ռազմական ինստիտուտը և նշանակվեցի դասակի հրամանատար: Որոշ ժամանակ անց ընտելացա ծառայությանս և, ինչպես ասում են, մտա հունի մեջ: Զինվորականի մասնագիտությունս ընտրել եմ ինքնուրույն: Ոչ մեկն ինձ խորհուրդ չի տվել: Դեռևս դպրոցական տարիներից էի որոշել գնալ հայրիկիս ճանապարհով: Գիտեք՝ եթե իրադարձություններն այլ կերպ զարգանային, հայրս հաստատ զինվորական գործի մեջ չէր լինի: Նա չի ունեցել բարձրագույն մասնագիտական կրթություն, բայց եղել է բարձրակարգ փականագործ: Ինչևիցե: Ծառայությանս յոթերորդ տարում նշանակվեցի վաշտի հրամանատար: Սա առաջին ծառայողական առաջխաղացումս էր, և ես ինձ անչափ ուրախ ու երջանիկ էի զգում: Ուրախ էի առաջխաղացման համար, երջանիկ, որ նշանակվել եմ այն վաշտի հրամանատար, որի առաջին հրամանատարը քսանմեկ տարի առաջ հայրս է եղել՝ լեգենդար մարդ, զորական, Արցախի հերոս Աշոտ Ղուլյանը:

Երբ առաջին անգամ ծանոթներիցս մեկը ինձ հարցրեց, թե ինչո՞ւ ընտրեցի զինվորականի մասնագիտությունը, պատասխանեցի՝ իսկ դուք իմ փոխարեն, ում հայրը կռվել ու զոհվել է հանուն Արցախի անկախության, և ում գործը, իմ խորին համոզմամբ, կիսատ է մնացել (նկատի ունեմ վերջնական խաղաղության հաստատումն ու Արցախի ինքնորոշման ճանաչումը միջազգային հանրության կողմից), և ում ծննդավայրի գլխին դամոկլյան սրի նման շարունակվում է կախված մնալ պատերազմի վտանգը, Հայրենիքին ավելի պիտանի, օգտակար լինելու համար ավելի լավ ի՞նչ մասնագիտություն ու ճանապարհ կընտրեիք: Ծանոթս հասկացավ խոսքերիս իմաստը, հասկացավ, որ դիպել էր սրտիս ամենից զգայուն ու ցավոտ տեղին:

Մասնագիտությամբ մոտոհրաձիգ եմ: Ծառայում եմ սիրով, անմնացորդ նվիրումով: Եվ ծառայության ընթացքում ինձ մշտապես ուղեկցում է հայրիկիս թևավոր դարձած՝ «Մեր տան լույսին շատ նայող կա» նախադասությունը:

Այս պահին մասնակցում եմ հրամանատարական որակավորման դասընթացներին իմ մասնագիտությամբ Վազգեն Սարգսյանի անվան ռազմական ինստիտուտում:

***Արթուր ՂՈՒԼՅԱՆ, մայոր***
**Hayzinvor.am**

## Մի անգամ Դալայ Լամային հարցնում են, թե ինչն է ամենաշատը նրան զարմացնում: Նա պատասխանում է՝ մարդը:



Սկզբում նա զոհաբերում է իր առողջությունը, որպեսզի փող աշխատի:

Հետո փող է ծախսում, որ վերականգնի առողջությունը:

Այդ ժամանակ նա այնքան է անհանգստացած իր ապագայով, որ երբեք չի վայելում ներկան:

Արդյունքում նա ապրում է ո՛չ ներկայով, ո՛չ ապագայով:

Նա ապրում է այնպես, կարծես երբեք չի մահանա, իսկ մահանալուց ափսոսում է, որ չապրեց:

## Պեպը

Նորելուկ պետը գեր ու փառահեղ,
Նստած բազմոցին կեցվածքով ահեղ,
Գովում էր իրեն, պարսավում ինին՝
Գամելով նրան լուտանքի սյունին.
– Թե ես չլինեմ, արևս վկա,
Ձեր գլխին, անշուշտ, մի փորձանք կգա.
Առանց ինձ իսկույն ընկնում եք նեղը,
Ես եմ աշխատում բոլորիդ տեղը:
Թե դուք աշխատեք ոնց ինի օրով՝
Ձեզ էլ չեմ պահի՝ խնդրեք էլ զոռով:
– Ձերդ մեծություն, – համդգնեց մեկը,–
Երկու օր չկա՝ ձեր ձեռքն է ղեկը,
Իզուր եք դուք մեզ անարգանք տալիս,
Ձեր խոսքի ոճը մեզ դուր չի գալիս...
– Ձայնդ, ապերախտ, – սաստեց քծնողը,
(Ուզեց պնդացնել ոտքի տակ հողը),–
Գիտե՞ս թե քանի հիմնարկ է փոխել,
Մեկին բարձրացրել, մեկին բանտ կոխել...
Այսպիսի լավ պետ, ճարպիկ, խոհունի,
Դեռ ոչ մի հիմնարկ մինչ այսօր չունի:
Եվ հաջորդ օրը անդող, անվարան
Պատին փողփողաց երկու հրաման:
***Սամսոն ԲԵԿՉՅԱՆ***

Ընտրությունները միակ մրցավազքն են, որտեղ հաղթում է մասնակիցների մեծամասնությունը:
***Լ. ՊԻՏԵՐ***

Վաճառել այն, ինչ չունես՝ նրան, ով դրա կարիքը չունի. հենց դա է բիզնեսը:
***Ս. ԿՐԱՄԵՐ***

Երբեք մարդիկ այնքան չեն ստում, որքան պատերազմի ժամանակ, որսից հետո եւ ընտրություններից առաջ:
***ԲԻՍՄԱՐԿ***

**Ազգ իմ, որքան նկուն մնաս, սիրտս քեզնից չի զատվի**
***Ջիվանի***

# Մերօրյա բանահավաքի նոթերից

Հույսով եմ ասում և ազգիս կերտած պատմությամբ հաստատում՝ հայն արարող ժողովուրդ է, հայն Աստծո ընտրած ժողովուրդ է, հայը շենացնող ժողովուրդ է:

***

Հայի բարոյական արժեքը իր ինքնության իսկական արմատների մեջ է:

***

Հայի բարոյական օրենքները օրորոցից են կյանք մտնում, հայի ոգին այն ոգին է, որ սերմանվել է աստվածաշնչյան նյութով:

***

Հայը մարդկության աղն է:
Պետք է այդ ճշմարտությունը հասցնել աշխարհին:

***

Ինչ անես. հայը սիրում է մեծ ճամփաները ու թերևս ամբողջ աշխարհի հետ հարազատանալու փափագ ունի:

***

Հայը դարձավ գաղթական՝ ներառելով հաղթելով ապրելու ազգային հոգեբանություն:

***

Հայ ժողովրդի գոյության առանցքը իր լեզուն է, իրեն պահպանող լեզվական մտածողությունն ու զգացողությունը:

***

Հայերս ազգությամբ մարդ ենք, դավանանքով՝ բարեկամ:

***

Մեր հայրենիքը արյան նման է, մեկ հոսել, տարածվել է՝ զբաղեցնելով անսահմանություն, մեկ հավաքվել, գնդվել, բռնցքվել՝ սրտի նման:

***

Խաչքարերը, որ տեղ են գտել ամենուր, մեր փոքր ժողովրդի հոգու հարուստ արտացոլանքներն են աշխարհի քարտեզին:

***

Օտար երկինքների տակ ապրող հայը հող է փնտրում, հող է հայցում իր ոտքերի վրա ամուր կանգնելու համար: Եվ այդ հողը նա կգտնի Հայաստանում:

***

Անցյալի մեջ փնտրելու-գտնելու ամենակարևոր-հանգուցային այն խնդիրը, արգելքը, սխալ-հիվանդությունը վերջապես հաղթահարելու գնով միայն հայ մարդը, հայ ժողովուրդը կգտնի իր ճշմարիտ ուղին, հուսալի ապագան:

***

Առանց առողջացման Հայաստանը ինչպես կարող է «հզոր» երկիր դառնալ: Հայ ժողովուրդը կռնա բուժվել, Արարատի փեշերում անկարելի է, որ չգտնվեն բուժման միջոցներ: Ես կհավատամ, որ հայը թեև ըսի քիչ, բայց ունի հզոր բուժման միջոց, և այդ դեղը միշտ ալ ես կոչում եմ **ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ:**
Հայ ժողովուրդ, բուժիր դուն քեզ, օտարը քեզ չի բուժելու...

Թումանյանի ափսոսանքը, որն է՝ երկիր ունենք՝ չենք ճանաչում, ժողովուրդ ունենք՝ չենք ճանաչում, գրականություն ունենք՝ չենք ճանաչում, պատմություն ունենք՝ չենք ճանաչում... Իբր մեր ինչն ենք ճանաչում, ու չճանաչելով ուր պիտի հասնենք:

**Սիրելի կարդացող, չնեղանաս, որ բանն էսքան երկարացրի: Էնդուր համար եմ հիշում, որ իմանաս, թե ազգի սերը ինչ լազաթ ունի, ինչ զորություն:**

***Խաչատուր Աբովյան***

***Դեսից-դենից քաղեց Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆԸ***

# ԱՊՐԻԼՄԵԿՅԱՆ ԿԱՏԱԿՆԵՐ

👍👍👍👍👍

– Պարոն ենթասպա, կինդ քեզ մոտ է եկել:
– Ոչ թե քեզ մոտ, այլ Ձեզ մոտ:
– Չէ՛, մեզ մոտ ինքը երեկ էր եկել:

👍👍👍👍👍

– Պարոն սպա, կոկորդիլոսները թռչո՞ւմ են:
– Կոկորդիլոսնե՞րը: Ո՞վ է քեզ այդ հիմարությունն ասել:
– Պարոն գեներալը:
– Պարոն գեներա՞լը: Հը՜մ... Ընհանրապես թռչում են, բայց շա՜տ ցածր:

👍👍👍👍👍

Դատավորը հարցնում է.
– Գողությունը անձա՞մբ եք կատարել:
– Այո՛, ձերդ արժանապատվություն, – պատասխանում է ամբաստանյալը: – Դե՜, վատ ժամանակներ են, ոչ ոքի վստահել չի կարելի:

👍👍👍👍👍

– Կարո՞ղ ես ասել՝ «ո՛չ»:
– Ո՛չ, չեմ կարող:

👍👍👍👍👍

– Ինչո՞ւ են տղամարդիկ շարունակ սուտ խոսում:
– Որովհետև կանայք անվերջ հարցեր են տալիս:

👍👍👍👍👍

– Ադամ, ինչո՞ւ ուշ վերադարձար: Ո՞ւմ հետ էիր ժամանակ անցկացնում:
– Ինչե՜ր ես հորինում, Եվա: Չէ՞ որ դրախտում երկուսով ենք:
Բայց երբ Ադամը քնեց, Եվան, համենայնդեպս, հաշվեց Ադամի կողոսկրերը:

👍👍👍👍👍

Բժիշկների վերապատրաստման կենտրոնում երկու բժիշկ զրուցում են.
– Հը, ի՞նչ կարծիքի ես մեր նոր բաժնի վարիչի մասին:
– Էշի մեկն է:
– Հլը հետ նայի, հետևդ կանգնած է:
– Չէ՜, ես էդ բառի լավ իմաստով ասացի:

👍👍👍👍👍

Հանդիպում են երկու ընկեր:
– Լսիր, չե՞ս կարող ասել, մոտավորապես քանի՞ ձիաուժ կունենա զոքանչս, - հարցնում է առաջինը:
– Ինչի՞դ է հարկավոր:
– Երեկ կարդացի, որ 1 գրամ նիկոտինը 1 ձի է սպանում: Ուզում եմ պարզել, քանի գրամ է հարկավոր:

👍👍👍👍👍

Նավապետին է մոտենում մի տղամարդ.
– Չէի ուզում ձեզ անհանգստացնել, քանի դեռ թերթ էիք կարդում... Կինս մեկ ժամ առաջ ծովն ընկավ:

👍👍👍👍👍

Կինը՝ ամուսնուն.
– Օրինակ վերցրու հարևանից: Նա իր կնոջը ապրիլի 7-ի առթիվ գեղեցիկ զգեստ է նվիրել:
– Զարմացրեց՝ զգեստ: Ես նրան ոսկե մատանի եմ նվիրել:

👍👍👍👍👍

– Հետաքրքիր է, ձեր աղջիկը նմա՞ն է մորը:
– Ի՞նչ իմանամ, նա դեռ խոսել չգիտե:

👍👍👍👍👍

– Յուրաքանչյուր կնոջ կյանքում երեք անցումային շրջան է լինում:
– Որո՞նք են:
– Առաջին շրջանում հոր նյարդերն է սղոցում, երկրորդում՝ ամուսնու, երրորդում՝ փեսայի:

👍👍👍👍👍

Որդին հարցնում է հորը.
– Հայրի՛կ, փողն ի՞նչ է:
Հայրը երազկոտ պատասխանում է.
– Փողը, որդիս, մեքենա է, կոնյակ, գեղեցիկ կանայք:
– Իսկ եթե փող չկա՞:
– Այդ դեպքում՝ տրոլեյբուս, թեյ և քո մայրիկը: Վիրավորական է, չէ՞:

👍👍👍👍👍

Հարբած օդաչուն տուն է վերադառնում: Դուռը ծեծում է, կինը ներսից հարցնում է.
– Ո՞վ է:
– Իլ-62-ը վայրէջք է խնդրում:
– Չեմ թույլատրում:
- Պարզ է, գնում եմ երկրորդ շրջանը կատարելու:

➲14

# Նաեւ ծիծաղով պիտի հաղթենք

## Արամայիս Սահակյան

Հումորը օգնում է կյանքը մի փոքր թեթևացնելու, լարվածությունը թուլացնելու, երգիծանքն էլ անհրաժեշտ է մթնոլորտի «Հավասարակշռությունը» պահելու համար, երբեմն սուր, երբեմն չափազանցված՝ տեսանելի դարձնելու այն, ինչը խանգարում, կոշտ խրվում է կյանքի ներդաշնակության մեջ, ցույց տալիս կյանքի պրոզան ու նրանում տեղ գտած կոմիզը: Եվ ինչպես գլխավոր «Ոզնին»՝ սիրված երգիծաբան, հրապարակախոս Արամայիս Սահակյանը կասեր, որ թերությունների ու անարդարության դեմ կռվում էր ոզնիական փշերով (նրա ամբողջ կյանքն ու ստեղծագործությունը պայքար էր հանուն գեղեցիկի, ազնիվի, ճշմարտության ու բարու հաղթանակի), - Կատակը կատակ բան չէ, - Կյանքն ու երգիծանքն ամեն, ամեն օր այնքան նույնանում են, գլուխը քորելու բան է:

... Աշխարհը փրկվեց, որովհետև ծիծաղեց: Ապրելով ծիծաղի ու հումորի երկրում՝ մենք ինչո՞ւ չծիծաղենք... չէ որ առողջ ծիծաղը երբեք ավելորդ չի լինում:


Իրենցն ասում են, սակայն չեն լսում:
Նկ. Հ. Տեր-Ղազարյանի (1989 թ.)

***

— Փորձանքից հեռու լինես, — ասացի արտասահման մեկնող մի հայրենակցի:
— Դրա համար էլ հեռանում եմ..., — ասաց նա:

***

— Դու գիտե՞ս, որ երկրի առաջնորդներից մեկը իմպոտենտ է եղել, — ասաց պատգամավոր Վաչագան Հարոյանը:
— Իմպոտենտ է եղել, բայց բռնաբարել է բոլորիս, — պատասխանեց:

***

— Բազմակուսակցությանը կո՞ղմ ես, — հարցրին ինձ:
— Ո՛չ, դեմ չեմ, — դիտմամբ պատասխանեցի ես:
— Ինչո՞ւ:
— Որովհետև առաջ մի կուսակցություն էր երկիրը քանդում, հիմա բոլորը միասին պիտի քանդեն:

***

Խորհրդարանի մոտ հավաքված մարդկանց հարցրի.
— Քաղցած չե՞ք:
— Ոչ, շատ կուշտ ենք... Բոլորիցդ, - պատասխանեցին նրանք:

***

— Խորհրդարանում զո՞վ է, — հարցրին ընտրողներս:
— Այո: Որովհետև բոլոր խոսափողներից փչում են:

***

— Ո՞րն է Ձեր կյանքի ամենամեծ սխալը, — հարցրին:
— Իմ սխալն այն է, որ ճիշտ եմ ապրել:

***

— Որևէ բանաստեղծություն չե՞ք գրել Ձեր զույգ թոռնիկների մասին, — հացրեց մի ծերունի:
— Գրել եմ՝ «Ծնվել եք՝ հյու՛ր եք եկել,բայց գիտե՞ք, ուր եք եկել...»:
— Իսկի մեծերս չգիտենք, երեխաները ի՞նչ իմանան..., — հառաչեց նա:

***

— Քամու էներգիան պետք է օգտագործել, — ասաց պատգամավոր Սեյրան Զավուկցյանը, — Հայաստանում քամին շատ է:
— Մանավանդ՝ խորհրդարանում և քո ելույթում..., — ասացի ես:

***

Ժողդատավոր Ժաննա Կոթիկյանին ասացի.
— Կեցցե՛ք, որ արդար դատեցիք:
— Ի՞նչ եմ արել որ, — ասաց նա, — ուղղակի օրենքով եմ դատել:
— Մի՞թե չգիտեք, որ անօրեն պետության մեջ օրենքով դատելը սխրանք է, — պատասխանեցի ես:

***

Մենք պետք է դառնանք ազգ, ոչ թե ... բնակչություն:

***

Մեր ժողովուրդը չար չի, բայց ցավոք դառնում է ... չարչի:

***

Այս ինչ օրն ընկանք՝ հոգսի ձորն ընկանք: Բայց ինչպե՞ս ելնենք, ախր խորն ընկանք:

***

Խոսքի համաճարակ է, խոսքի երկրաշարժ: Երբ շատ են խոսում, ոչ ոք չի լսում:

***

Այո, կարևորը գործն է, ոչ թե խոսքը: Դեղն ու ճարը, ոչ թե ճառը:

***

Ինչո՞ւ են ասում՝ ղեկավար մարմին: Որովհետև միայն մարմին է, հոգի չկա:

***

Սիրում եմ ընդունակ մարդկանց, բայց ատում եմ ամեն ինչի ընդունակներին:

***

Աղետյալին չօգնելը ազգային աղետ է, աղետյալից օգտվելը՝ կրկնակի աղետ:
Սա հիշեցե՛ք հավետ:

***

Շատ խաբվելուց մարդիկ կորցրել են արդարության հավատը: Գուցե այստեղ է չարի արմատը:

***Էջը կազմեց ԼԵՒՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ***

---

***13Э***

Որոշ ժամանակ անց ամուսինը նորից է դուռը ծեծում ու ասում.
— Իլ-62-ը կրկին վայրէջք է խնդրում...
— Չեմ թույլատրում:
— Գնում եմ պահեստային օդանավակայան:
Առավոտյան վերադառնում է ու նորից դուռը ծեծում.
— Իլ-62-ը վայրէջք է խնդրում:
Կինը պատասխանում է.
— Ստիպված եք սպասել: Տու-144-ը դեռ չի թռել:

Ամուսինները վիճում են, ու կինն արցունքն աչքերին ասում է.
— Վե՛րջ, ես գնում եմ հորանցս տուն: Էլ հետ չեմ գա:
— Գնում ես, գնա՛... Ա՛ռ, էս էլ քեզ ճամփի փող:
Կինը փողերն արագ հաշվում է ու.
— Էս գնալունը, բա հետ գալո՞ւնը:

Նոր ամուսնացած կինը՝ ամուսնուն.
— Գիտե՞ս, ես կարող եմ հարմարվել բոլոր տարօրինակություններիդ: Ամբողջ օրը ծամոն ես ծամում, ոտերդ սեղանին դրած գարեջուր ես խմում: Մի բան եմ միայն խնդրում. հանի՛ր բերանիցդ այդ անիծյալ ծխափողը, երբ համբուրում ես ինձ:

— Բժիշկ, դուք բուժո՞ւմ եք սկլերոզ հիվանդությունը:
— Իհա՛րկե:
— Այդ դեպքում բուժեք ամուսնուս: Վերջերս նա սկսել է մոռանալ, որ ինքը տղամարդ է:

Բժշկուհին մրսած ձայնով շշնջում է ներս մտած այցելուին.
— Հանվե՛ք:
— Իսկ դո՞ւք, - կամաց հարցնում է այցելուն:

Այսօրվա կյանքում ով չբաշարի՝
Նա միշտ կմնա առանց պաշարի:

Գուցե զարմանա հեռու մարսեցին՝
Թե Հայաստանում վարկը ինչպես մարսեցին:

— Ի՞նչ տարբերություն բանտարկյալի և պատգամավորի միջև:
— Առաջինն իր ժամկետը լրանալուն անհամբերությամբ է սպասում, երկրորդը՝ սարսափով:

***Э15***

## Երգիծանք

# Որ դժոխքը դրախտի վերածի

### (Նովել)

ՀՀ հպարտ քաղաքացի Երջո Փնջոյի Մնջոյանը հաջող գործարքից հետո իր օֆիսում վաստակած դրամներն էր հաշվում, երբ մայրամուտի նուրբ շողերի հետ երկնքից աննկատ աշխատասենյակ սուրաց նորընտիր մի հրեշտակ և նրան մեկնեց Հրեշտակապետաց ժողովի որոշումը: Փնջոյիչը կարդաց, աչքերի առջև վեր հառնեցին դժոխքի պարունակները, մարմինը սառը քրտինք պատեց: Հրամայված էր երկինք համբարձվել:

Ճչաց՝ ինչու՞, ո՞ր մեղքի համար:

- Ճիշտ կռահեցիք, Ձեր անցյալը դժոխքում վերջնահանգրվանելու նախապատրաստություն է եղել, - կարճ կապեց հրեշտակը:

Փնջոյիչը փորձեց շարժել ջահել հրեշտակի գութը, սիրաշահեց, կաշառք առաջարկեց, հիշեցրեց իր մեծագործությունները: Անդրդվելի էր հրեշտակը, սառն ու հատու նետեց. «Ավելի ճիշտ կլինի ոչ թե մեծագործություններ, այլ մեղսագործություններ»:

Անարդարությունից պարոն Մնջոյանի դեմքը ծամածռվեց փուշ կերած մոզու պես, սիրտը վերուվար արեց, ոնց որ խափան վերելակ, միայն ճչաց. «Չեմ գա, երկնքում անելիք չունեմ»: Ինչին հրեշտակն արձագանքեց՝ յոթ օր ժամանակ կա, ավարտին հասցրու երկրային գործերդ: Ու անհայտացավ:

Օգնականները հրեշտակին ջահել կաթնակեր անվանեցին, խորհուրդ տվեցին ներման խնդրագիր հղել Գաբրիել հրեշտակապետին: Համատեղ ուժերով խնդրագիրը գրվեց.

*«Գաբրիել հրեշտակապետ, ջերմ ողջույններս վերերկրային էակներիդ: Հոգով հարգում եմ Ձեզ ու հրեշտակների դասը, բայց, ներող կլինեք, ես էդտեղ եկողը չե՜մ: Ի՞նչ գործ ունեմ դժոխքում, երբ այստեղի դժոխքն էլ ինձ լիուլի բավարարում է: Իմացեք՝ ես այստեղ եմ դժոխքը դրախտի վերածում ինձ համար: Չե՞ք հավատում: Ինքներդ իջեք՝ կհամոզվեք: Գափո ջան, ապո՜, իջիր, մի քանի օրով իջիր, տես՝ ի՜նչ մարդ եմ, ի՜նչ գործեր եմ ձեռնարկել: Օրերդ ուրախ կանցնեն: Ինքդ մշակույթի մարդ ես, խաղատներ, ռեստորաններ, սաունաներ կայցելենք, կհիանաս դրանց ճարտարապետական տեսքով: Առաջիկա ամսում երեք տեղ խաշի, երեք հարսանիքի և չորս թաղման ծեսի եմ հրավիրված: Կապրես դղյակներիցս մեկում, որքան սիրտդ կուզի: Կծանոթանաս ընտանիքիս անդամներին: Մեծ տղաս ԱՄՆ-ում է, էնտեղ է որոշել հայրենիքին ծառայել: Միջնեկս էնքան մարդասեր է, որ Ղարաբաղի ղալմաղալին չմասնակցեց, մի թուրքի չվնասեց: Ասում է՝ թուրքն էլ մարդ է, նրան էլ մայր է բերել: Բայց սկզբունքային տղա է, մարդու վատ արարքը չի ների: Օրերս մի ջահել ճանապարհը չզիջեց, զենքը հանեց ու գյուլլեց: Չկարծեք խեղճին անտեր-անտիրական թողեցինք, թաղման ծախսերը մենք հոգացինք: Փոքրիս մասին կարծիք կկազմես, երբ նրա մեքենան նստես ու «գոնկեքը» տեսնես: Ո՜նց է վարում էստեսակ քաղաքում: Նրա տարիքի երեխաների համար ծնողները դեռ տիկնիկ են գնում: Կայցելենք կնոջս գերեզման, ծաղիկ կդնենք, քառասունքից հետո էնտեղ չեմ եղել: Չրպարտում են, թե նրան ես եմ թունավորել: Ազնվորեն ասեմ՝ թույնի բաժակը խմելիս ես մոտը չեմ եղել: Երկար եմ տառապել, նոր կին տուն եմ բերել միայն քառասունքի օրը: Էս մեկի հետ իսկական ամուսիններ չենք, կապված ենք լոկ մարմնապես: Մեղադրում են՝ ջրի գնով գործարաններ եմ ձեռք բերել: Եթե ջրի գնով չտային, ես ո՞նց ձեռք կբերեի: Այո, դրանք չեն աշխատում, որովհետև ես չեմ սիրում ճորտական աշխատանքը: Նախկին բանվորները հեռացել են երկրից և երջանիկ կյանք են վարում արտասահմաններում: Մարդիկ ինձ շատ են սիրում, տեսնես՝ ո՜նց են շուրջս պտտվում: Գիտեմ, փողի համար է, բայց դե պտտվում են: Քիչ մնաց մոռանամ՝ էդուց-էլօր պատգամավոր եմ դառնում, մանդատը գրպանումս է, գիտե՞ս ինչ ծրագրեր ունեմ շրջապատիս համար: Ապո ջան, Գափո ջան, քո գալը գովազդ կլինի ինձ համար: Հոգնել եմ ամեն առիթով ծախսեր անելուց, թող այդ գովազդն էլ անփող լինի: Էնպես որ՝ անհոգ ներքև իջիր: Հարգանքներով՝ քո Մնջոյան»:*

Նամակը երկինք առաքելուց հետո Փնջոյիչը օֆիս հրավիրեց արվեստի մի խումբ գործիչների և հանձնարարեց միջնորդագիր հղել երկինք: Նրանք նույն օրը երկնեցին. *«Մենք՝ հայտնի արվեստագետներս, խնդրում ենք վերանայել Ե. Փ. Մնջոյանին երկինք համբարձվելու անմիտ որոշումը: Մեզ մի զրկեք մեր առատաձեռն մեկենասից: Նա օգնության ձեռք է մեկնում բոլոր կարիքավորներին: Այժմ էլ կազմում է ցուցակներ՝ պատգամավոր ընտրվելու դեպքում օգնություններ բաշխելու նպատակով: Մեր Փնջոյիչը անգամ գազանների մասին է մտահոգված: Գիտե՞ք քանի առյուծ է փրկել անապատներից ու ջունգլիներից՝ նրանց համար ստեղծելով ապրելու կուլտուր-կենցաղային լիարժեք պայմաններ, ինչից զուրկ են մեր համաքաղաքացիները: Հա, փողասեր է: Բայց դա պակասություն չէ, մեծ զոհողություն է. մեզ է թողել սեր, ծաղիկ, բնություն երգելու, նկարելու մենաշնորհը, ինքն ընտրել է կեղտոտ փողը: Խիղճ չունի: Չեք սխալվում: Խիղճ ունենար՝ կմտներ ուրիշի դրության մեջ ու չէր կարող դուրս գալ: Բայց մեր Փնջոյիչի մեղքը ո՞րն է, երբ նրա հոգում որևէ մեկը խիղճ չի պատվաստել, որ ծաղկեր ու պտուղներ տար: Փոխարենը, դաստիարակված է Քրիստոնեից ոգով: Սիրում է մերձավորին՝ գույքի և ունեցվածքի համար: Ենթարկվում է մի սպանաներ պատվիրանին. ինքն անձամբ չի սպանում, պատվիրում է: Կաշառք, նվեր չի ընդունում: Վերցնում է: Սկզբունքային մարդ է: Նրա պրակտիկայից բնորոշ մի օրինակ. սխալմամբ կարծում էր, որ հարևան գործարարը աչք է տնկել իր ունեցվածքին: Եկան, զեկուցեցին, որ մարդը մեղք չունի, լավ կլինի ների: Չներեց: Եթե մարդը սխալ չունի, Փնջոյիչը ի՞նչը ների: Նրա հուղարկավորությունն էլ ինքը ֆինանսավորեց: Փնջոյիչը պատգամավոր է ընտրվում: Բավական է ինչքան ուրիշները վայելեցին: Խնդրում ենք՝ մեզ մի զրկեք մեր աստծուց: Հարգանոք՝ արվեստի գործիչներ»/* **100 ստորագրություն.**:

Գաբրիել հրեշտակապետից պատասխան ստացվեց. *«Հրեշտակապետաց ժողովը գիտափորձնական նպատակով դժոխքում տարածք է առանձնացրել՝ դրախտի վերածելու նպատակով: Ծրագրի կատարման ղեկավարումը դրված է քաղաքացի Ե. Փ. Մնջոյանի վրա: Նա պարտավոր է երկինք համբարձվել և ձեռնամուխ լինել դժոխքը դրախտի վերածելու գործընթացին, ինչը նրան հաջողվել է երկրի վրա: Հարգանքներով՝ ՀԺ նախագահ Գաբրիել հրեշտակապետ»:*

Յոթ օր անց՝ նույն հրեշտակը դարձյալ երկիր իջավ և իր հետ երկինք տարավ մեծն գործարար Ե. Փ. Մ.-ին:

***Գագիկ ԱՆՏՈՆՅԱՆ***

14➲

## ՀԱՅԿԱԿԱՆ ՌԱԴԻՈՆ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ Է

– Ի՞նչ հարաբերակցության մեջ են դոլարը, դրամը, ֆունտը:
– Մեկ ֆունտ դրամն արժե մեկ դոլար...

☜☜ ☜☜ ☜☜

– Ինչպե՞ս մահացավ Բրեժնևը:
– Անձամբ:

☜☜ ☜☜ ☜☜

– Ի՞նչ հասցրեց անել Խրուշչովը և ի՞նչ չհասցրեց:
– Հասցրեց զուգարանը միացնել լոգարանին, չհասցրեց հարկը միացնել տանիքին:

☜☜ ☜☜ ☜☜

– Կարելի՞ է կոմունիզմ կառուցել Շվեյցարիայում:
– Կարելի է, բայց շվեյցարացիներն են մեղք:

# Ով պատմություն ունի՝ չի կարող եփ չնայել Ով անցյալ ունի, չի կարող հիշողություն չունենալ

1967 թվականի նոյեմբերի 29-ին Ծիծեռնակաբերդի բարձունքում բացվեց Հայոց ցեղասպանության զոհերի հիշատակը հավերժացնող հուշարձանը: Հուշարձան կառուցելու որոշումը կայացվել էր 2 տարի առաջ՝ 1965-ին, երբ Երևանում առաջին անգամ պետականորեն նշվեց ահավոր ոճրագործության 50-րդ տարելիցը: ՀԿԿ ԿԿ առաջին քարտուղար Յակով Զառոբյանի կարգադրությամբ հայտարարվել էր հուշարձանի նախագծի մրցույթ: Բազմաթիվ աշխատանքներից հաղթող ճանաչվեց Արթուր Թարխանյանի և Սաշուր Քալաշյանի նախագիծը: Որոշվեց նաև հուշարձանի տեղը, և 1965-ի սեպտեմբերից սկսվեցին նախապատրաստական աշխատանքները, որոնց անձնական նախաձեռնությամբ ու մեծ ոգևորությամբ մասնակցում էին ուսանողները, մտավորականները, Երևանի քաղաքացիները, հանրապետության մոտակա շրջաններից եկող մարդիկ:



Յ. Զառոբյանի փոխարեն Կենտկոմի քարտուղար նշանակվեց Անտոն Քոչինյանը: Հուշարձանի շինարարությունը մշտապես նրա ուշադրության կենտրոնում էր: Ծիծեռնակաբերդում կատարվող աշխատանքի ընթացքին պաշտոնատար այլ անձանց հետ ուշիուշով հետևում էր նաև Կարեն Դեմիրճյանը, որն այդ ժամանակ կուսակցության Երևանի քաղկոմի երրորդ քարտուղարն էր:

– Շինարարությանը մասնակցում էր շուրջ 80 մարդ: Շինտեղամասի պետն էր Արտյուշա Օրդուխանյանը: Հենց նա էլ ինձ առաջարկեց աշխատել Ծիծեռնակաբերդում, – պատմում է երկարամյա շինարար Վրեժ Աբրահամյանը, որն այն ժամանակ ընդամենը 24 տարեկան էր, սակայն արդեն շինարարությունում աշխատելու փորձ ուներ: Նա ջերմությամբ է հիշում բոլոր գործընկերներին, հատկապես Արտյուշա Օրդուխանյանին: Հմուտ շինարար էր, նաև՝ մեծ հայրենասեր: Մոսկվայում նախագիծը ներկայացվել էր ոչ թե որպես Եղեռնի զոհերի հիշատակը հավերժացնող կոթող, այլ որպես հայ ժողովրդի վերածնունդի հուշարձան: Այդուհանդերձ Թուրքիայից պարբերաբար ստացվող բողոքների պատճառով շինարարությունը երկու անգամ ընդհատվեց: Օրդուխանյանը աջ ու ձախ էր ընկնում, ոտքի հանում ժողովրդին, ու Կենտկոմ էին հասնում տասնյակ նամակներ շինարարությունը շարունակելու խնդրանքով: Աշխատանքի հիմնական մասը ծանրացած էր քարագործ բանվորների ուսերին: Ավելի քան 30 քարտաշ՝ կոնդեցի, սարիթաղցի, քեսաբցի եւ մուսալեռցի հմուտ վարպետներ, աշխատում էին օրնիբուն: Վարպետ Ավոն, Սաքոն, Արշավիրը, մյուս քարտաշներից շատերը հիմնականում արևմտահայերի զավակներ էին: Ուզում էին օր առաջ ավարտել աշխատանքը: Ապրիլի 24-ին նրանց նախաձեռնությամբ սեղան էր բացվում ի հիշատակ անմեղ նահատակների: Հայրենասիրական երգեր էին երգում, հիշում ծնողների, պապերի պատմածները:

Մույթերի հսկայական քարերը բերում էին Հայաստանի տարբեր հանքավայրերից՝ Ստեփանավանից, Սիսիանից, Վանաձորի (Կիրովական) Սարալ կոչվող հանքավայրից, Եղեգնաձորից: 10-15 տոննա կշռող քարակտորները տեղափոխելը նույնպես մեծ վարպետություն էր պահանջում, ուստի բոլոր վարորդներն էլ փորձառու էին: Պահպանված լուսանկարը, որում պատկերված է, թե ինչպես են տեղադրում 8 տոննա կշռող մույթի վերջին քարը, պատկերացում կտա, թե ինչ ահռելի աշխատանք է կատարվել: Ընդհանրապես շինարարական աշխատանքում ներգրավված էին հմուտ ու բանիմաց մասնագետներ, և բոլորն էլ աշխատում էին մեծ պատասխանատվությամբ ու նվիրումով:

– Ամբողջ ընթացքում զգացվում էր հանրապետության ղեկավարության ուշադրությունն ու ժողովրդի ջերմ վերաբերմունքը: Աշխարհի տարբեր ծայրերից գալիս էին սփյուռքահայեր: Հող էին բերում Վանից, Մուշից ու Դեր Զորից: Տարեց մի մարդ բերել էր Եղեռնի զոհ դարձած քրոջ հյուսքը: Բոլոր մասունքները դրված են հուշարձանի մույթերի մեջ, – պատմում է Վրեժ Աբրահամյանը:

Հուշարձանի բացման արարողության ժամանակ շինարարությունն իրականացնող «Երքիմշին» տրեստի կողմից ելույթ պիտի ունենար հենց ինքը՝ Վրեժ Աբրահամյանը:

– Ես ու քույրս ոգեշունչ մի ելույթ գրեցինք Ցեղասպանության, միլիոնավոր անմեղ զոհերի, թուրքերի գազանությունների մասին: Քաղկոմում տեքստին ծանոթացան, բնականաբար ինձ կարդալու այլ տեքստ առաջարկեցին: Այնուամենայնիվ տողերի արանքում իմ տեքստից մեջբերում արեցի. «Հիմա էլ Դեր Զորով անցնելիս մարդու ոտքը դիպչում է հազարավոր անմեղ զոհերի ոսկորներին»: Բայց ելույթիցս ավելի տպավորիչ էր այն, ինչ կատարվեց այն պահին, երբ հայտարարեցին, որ խոսքը տրվում է Վրեժ Աբրահամյանին: Բոլոր ներկաները մի մարդու նման ձեռքերը բռունցք արած վեր պարզեցին ու սկսեցին վանկարկել՝ վր-րեժ, վր-րեժ:

Հիշելու շատ բան ունի հմուտ շինարարը: Պատմում է, որ հուշասյունը նախապես երեսապատված է եղել չժանգոտվող պողպատով, որի վրայից փչել էին ավազի ու ածուխի խառնուրդ: 80-ականների սկզբներին Կարեն Դեմիրճյանը հրահանգում է պողպատը փոխարինել սև գրանիտով: Ասում են՝ Մոսկվայում հանդիպել էր Վրաստանի Կոմկուսի կենտկոմի քարտուղար Է. Շևարդնաձեին և Ադրբեջանի Կոմկուսի կենտկոմի քարտուղար Հ. Ալիևին, վիճաբանել էին ազգային հարցերի շուրջ, Կարեն Դեմիրճյանը զայրացած վերադարձել էր ու այդպիսի որոշում կայացրել: Այդ ժամանակ փոխվեց նաև սգո ճեմուղու և տապանի սալահատակը: Վրեժ Աբրահամյանը պատմում է նաև, որ հուշարձանի բացումից հետո տարիներ շարունակ շինարարության մասնակիցները սովորություն են ունեցել միասին բարձրանալու Ծիծեռնակաբերդ: Հիմա արդեն շատերը չկան: Շատերի մասին էլ ինքը, ցավոք, տեղեկություններ չունի...

**Գ. Ե.**

# ՀՈՒՇԵՐ ԵՂԵՌՆԻ ԶՈՀԵՐԻ ՀՈՒՇԱԿՈԹՈՂԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԻՑ

## Վերջին 70 տարում հայ ժողովուրդը նման ձևով աղքատ չի եղել

«Գրականությունից սկսած՝ մինչեւ պատմությունը կեղծվում է: Վերջին 70 տարում հայ ժողովուրդը նման ձեւով աղքատ չի եղել: Հիմա հակաժողովրդական համակարգի խայտառակության տարիներ են» այսօր 1 միլիոն 300 հազար աղքատ կա, այսօր ժողովուրդը փախչում է հայրենիքից, դատարկվում է երկիրը: Միայն սոցիալիստական համակարգը կվերականգնի երկիրը: Հիշենք նաև Ալեքսանդր Մյասնիկյանի կազմակերպած ներգաղթը. Հայաստան վերադարձան Սարյանը, Սպենդիարյանը, Թամանյանը, որոնք, թողած իրենց բարեկեցիկ կյանքը, եկան հայրենիք կառուցելու և կառուցեցին: Ցավով եմ նկատում, որ այսօր ամեն ինչ հողին է հավասարվել, և այսօր չկա մի բնագավառ, որ կարելի լինի համեմատել Սովետական Հայաստանի համապատասխան բնագավառի հետ:

## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹՅՈՒՆ–100.

# ՀԱՅԵՐԸ ՉՈՒՆԵՆ ՕՍՄԱՆԵՐԵՆԻ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐ

Հայաստանի ազգային արխիվը մինչեւ 2015 թվականը կհրապարակի Հայոց ցեղասպանության վերաբերյալ շուրջ 12000 փաստաթուղթ ու 29 000 գրություն, որոնք նախկինում չեն կիրառվել: Ազգային արխիվի տնօրեն Ամատունի Վիրաբյանի մեկնաբանությամբ փաստաթղթերը հիմնականում ցեղասպանությունից վերապրածների վկայություններ են, աշխարհի տարբեր երկրների արխիվներից պեղած արխիվային նյութեր, տեղեկություններ որբ մնացածների եւ նրանց ծնողների մասին:

Փաստաթղթերի մեծ մասն արվել է 1916-ին, դրանք ստույգ տեղեկություններ են: Ցավալին այն է, որ 1960-ականներին, երբ ցեղասպանության վկայությունների աշխատություններ հրատարակվեցին, պատմական այս փաստաթղթերն անտեսվեցին: Վերոնշյալ փաստաթղթերը կհրապարակվեն նաեւ էլեկտրոնային տարբերակով, համացանցում կտեղադրվեն նաեւ լուսանկարներ:

Ցեղասպանությունից վերապրածների վկայությունների երեք հատոր արդեն հրատարակվել է. առաջինկայում կհրատարակվի եւս երկուսը: Մինչ ցեղասպանության 100-ամյա տարելիցը այդ գրքերը կթարգմանվեն նաեւ անգլերեն եւ թուրքերեն:

Ամատունի Վիրաբյանը կարեւորում է այն փաստը, որ հրատարակված գրքերում նկարագրվում են նաեւ Անդրկովկասում 1918-ին թուրք-թաթարական հրոսակներից հայերի կոտորածները:

Կան վկայություններ, թե 1918-ի մայիս-հոկտեմբեր ամիսներին թուրքական կանոնավոր բանակի եւ ադրբեջանցիների կողմից ինչպիսի կոտորածների են ենթարկվել հայերը Ելիզավետպոլի նահանգում, Բաքվում, Շամախում եւ այլ քաղաքներում: «Սա Հայոց ցեղասպանության անբաժանելի մասն է, որը թուրքերի հետ իրագործել են նաեւ նորաստեղծ Ադրբեջանի ղեկավարները»:

Նյութերի հիման վրա կպատրաստվի նաեւ ցեղասպանության զոհերի անունների էլեկտրոնային շտեմարան: Վիրաբյանի խոսքերով այս նախաձեռնությունն ուշացած է, քանի որ այն սերնդի մարդիկ, ովքեր կարող էին անհրաժեշտ տեղեկություն տալ, արդեն չկան, իսկ նրանց ժառանգները շատ բան չեն հիշում: «Այնուամենայնիվ, մենք կփորձենք եղած գրականության, թերթերի, հուշերի, առկա ցուցակների միջոցով ամբողջացնել տվյալները», ասաց Վիրաբյանը՝ հավելելով, որ արդեն հավաքագրել են 10000 անուն, սակայն թիվը նախատեսվում է հասցնել 150-200 000-ի:

Ազգային արխիվը նախատեսում է կատարել ցեղասպանության տարիներին ժողովրդի կրած նյութական կորուստների ճշգրտում: Բացի փաստաթղթերի հրապարակումից, արխիվն աշխատանքներ է կատարում ցեղասպանությունը վերապրածների ժառանգներին տեսագրելու ուղղությամբ:

Ցեղասպանության վերապրածների ժառանգները կամ երկրորդ սերունդը 70-80 տարեկան անձինք են, ովքեր ցեղասպանության մասին լսել են ծնողներից: Այսօր Ազգային արխիվը ավելի քան 200 ժամ



տեսագրություն ունի նրանց վկայություններից, այժմ աշխատանքներ են տարվում նորանոր անձանց ընդգրկելու ուղղությամբ եւ մինչեւ 100-ամյա տարելիցը արխիվը կներկայացնի նաեւ վավերագրական ֆիլմ նրանց մասին:

Ի դեպ, վերջին տարիներին ցեղասպանության մասին փաստաթղթեր տրամադրելու համար Ազգային արխիվը հյուրընկալել է երեք թուրք պատմաբանի: Տարվա ընթացքում ամենաքիչը 10 այլազգի պատմաբան է այցելում եւ ծանոթանում արխիվի նյութերին: Այս համատեքստում Ամատունի Վիրաբյանը որեւէ խնդիր չի տեսնում, որպեսզի համագործակցի այլ երկրների արխիվների հետ Հայոց ցեղասպանության վերաբերյալ նյութերի ձեռքբերման ուղղությամբ: Վրաստանից, Ուկրաինայից եւ Բուլղարիայից որեւէ արձագանք չի ստացվել մեզ օգնելու համար:

Հարեւան Իրանում էլ հարցը խնդրահարույցների շարքից է. մինչ օրս Իրանի արխիվներում որեւէ աշխատանք չի տարվել, մինչդեռ Իրանը Առաջին աշխարհամարտի տարիներին Ստամբուլում դեսպանատուն ուներ եւ հյուպատոսություններ Արեւմտյան Հայաստանում: Խնդիրն այն է, որ հայկական կողմը պարսկերենի (՞-խմբ.) փորձառու մանագետներ չունի, ովքեր կկարողանան աշխատել ձեռագրերի հետ:

Նույն խնդիրը կա նաեւ օսմաներենի հարցում: «Եթե մի օր բացեն թուրքական որոշ արխիվներ, ապա դա կլինի մեզ համար խնդրահարույց, քանի որ մենք չունենք օսմանագետներ, ովքեր մասնագիտանում են միայն այդ ուղղությամբ եւ ծանոթ են միայն տպագիր օսմաներենին»:

Վիրաբյանը դժգոհ է, որ երիտասարդ արեւելագետների պատրաստման հարցում պատշաճ ուշադրություն չի դարձվում, եւ մենք այդ հարցում կաղում ենք:

## Հայոց ցեղասպանության թանգարան բացել նաեւ Ռուսաստանում

Հայոց ցեղասպանության հարյուրամյա տարելիցին ընդառաջ հայ եւ ռուս մասնագետները Երեւան-Մոսկվա տեսակամրջի ժամանակ քննարկեցին հետեւանքներն ու այն դասերը, որ քաղել ենք այս մեկ դարի ընթացքում: «Անցել է մեկ դար, սակայն ցեղասպանության հետեւանքները դեռեւս վերացված չեն»: Դիտարկումը Հայոց ցեղասպանություն թանգարան-ինստիտուտի տնօրեն Հայկ Դեմոյանինն է: Արեւելագիտության ինստիտուտի տնօրեն Ռուբեն Սաֆրաստյանը բարձր է գնահատում ՌԴ Դումայի ընդունած յուրօրինակ փաստաթուղթը Արեւմտյան Հայաստանում տեղի ունեցած ցեղասպանության դատապարտման մասին:

Սեւծովյան-կասպյան տարածաշրջանի քաղաքական եւ սոցիալական հետազոտությունների ինստիտուտի տնօրեն Վլադիմիր Զախարովը շեշտում է, որ Թուրքիան փորձում է խեղաթյուրել պատմությունը, հերքում է, որ ցեղասպանություն է եղել, եւ թուրքական կողմի վերաբերմունքն ու քայլերն այս հարցի վերաբերյալ ցինիզմի գագաթնակետ են: «Թեպետ թուրքերն իրենց այլ կերպ են դրսեւորում, սակայն ինչ ուզում ես եղիր կամ ինչ անուն ուզում ես ունեցիր, միեւնույն է, դու թուրք ես, եւ շարունակում ես խաբել աշխարհին, որ Հայոց ցեղասպանությունը չճանաչվի: Թուրքական կառավարությունը հասկանում է, թե որքան փոխհատուցում պետք է տրամադրի Հայոց ցեղասպանությունից տուժածների ժառանգներին, դրա համար էլ չի ճանաչում իրողությունը», ասում է Զախարովը՝ հավելելով, որ Մեծ եղեռնի 100-րդ տարելիցին պետք է վերջակետ դրվի այս հարցին:

Զախարովը շեշտում է, որ Ռուսաստանում չկա համապատասխան գրականություն Հայոց ցեղասպանության ողբերգական



իրադարձությունների մասին: Այդ հարցով նրանք դիմել են հայ գործընկերներին, սակայն Հայաստանից ստացել են կարճ պատասխան. «Փող չկա»: Զախարովը նաեւ առաջարկում է Ռուսաստանում ստեղծել Հայոց ցեղասպանության թանգարան:

ՌԴ Հանրային պալատի անդամ Դենիս Դվորնիկովն ասաց, որ ՌԴ Հանրային պալատում ներկայում փաստաթուղթ է քննարկվում Հոլոքոսթի ժխտումը քրեականացնելու վերաբերյալ: «Ամեն ինչ պետք է արվի, որ այդ փաստաթուղթը վերաբերի նաեւ Հայոց ցեղասպանությանը», որպեսզի այդ կերպ դատապարտվի մարդկության հանդեպ հանցագործությունը:

**Համմիկ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

---

Լինում են ժամանակներ, երբ ամենավտանգավորը հասարակական կարծիքն է:

**ԼՅԱՌՈՇՖՈՒԿՈ**

Բարեկամությունը սովորաբար անցում է ծանոթությունից դեպի թշնամանք:

**ԿԼՅՈՒՉԵՎՍԿԻ**

# «Նեմեսիս»՝ վրեժխնդրության կազմակերպված գործողություն հայերի կոտորածների համար

«Նեմեսիս» գործողության նպատակն էր պատժել 1915 թ. հայերի ցեղասպանությունը կազմակերպող և իրականացնող երիտթուրք («Միություն և առաջադիմություն» կուսակցություն) պարագլուխներին, 1918 թ. Բաքվի հայերի ջարդի կազմակերպիչներին և թուրքերի հետ համագործակցած հայ դավաճաններին:

Գործողությունը կազմակեպել է Հայ հեղափոխական դաշնակցությունը: «Նեմեսիս» կամ «Նեմեզիս» (հուն. Νέμεσις) է կոչվել հին հունական վրեժխնդրության աստվածուհու անունով:

Գործողության կատարման որոշումը կայացվել է 1919 թ. Երևանում Հայ հեղափոխական դաշնակցության IX ընդհանուր ժողովում: Նշվել է ցեղասպանության հանցագործների 650 անուն, որոնցից առանձնացվել են 41 գլխավոր հանցագործները:

«Նեմեսիս» գործողությունն իրականացնելու համար ստեղծվել են պատասխանատու մարմին (ղեկավար՝ ԱՄՆ-ում Հայաստանի Հանրապետության ներկայացուցիչ Արմեն Գարո) և հատուկ հիմնադրամ (ղեկավար՝ Շահան Սաթճակլյան):

Գործողության օպերատիվ ղեկավարությունն ու նյութական ապահովումն իրագործելու էին Շահան Նաթալին և Գրիգոր Մերջանովը: Հանցագործներին հայտնաբերելու գործը ղեկավարելու էր Հրաչ Փափազյանը, որը, որպես թուրք ուսանող, կարողացել էր թափանցել երիտթուրք վտարանդիական բարձր շրջանակներ:

«Նեմեսիս» գործողությունը նախապատրաստվել է մանրամասն: Գործողության կազմակերպչական կենտրոններն էին Կ.Պոլսի «Ճակատամարտ» և Բոստոնի «Դրոշակ» թերթերի խմբագրատները: Վրիժառուների խմբերը յուրաքանչյուրում 3-5 մարդ, հետապնդելու էին կոնկրետ հանցագործին և հարմար պահին դատավճիռն ի կատար էին ածելու:

«Նեմեսիսը» կազմակերպվեց հաջողությամբ:

• 1919-22 թթ. սպանվեցին թուրք և ազերի ոճրագործներ Թալեաթը, Էնվերը, Ջեմալը, Բեհաէդդին Շաքիրը, Ջեմալ Ազմին, Սայիդ Հալիմը, Խան Խոյսկին, Սարաֆովը, Ջիվանշիրը: Ընդ որում, հայ վրիժառուներ Սողոմոն Թեհլերյանի, Արամ Երկանյանի, Արշավիր Շիրակյանի, Արամ Գևորգյանի, Միսակ Թոռլաքյանի գործողություններից ոչ մի կողմնակի անձ չի տուժել:

• 1919 թ. Թիֆլիսի Երևանյան հրապարակում Ա. Երկանյանը գնդակահարեց մուսավաթական Ղասիմբեկովին:

• 1920 թ. Թիֆլիսում 20-ամյա Արամը սպանեց Ադրբեջանի մուսավաթական կառավարության ղեկավար Խան Խոյսկուն՝ 1918 թ. սեպտեմբերին Բաքվի 30 և 1920 թ. մարտի 23-ին Շուշիի 35 հազար հայերի ջարդի գլխավոր կազմակերպչին, մուսավաթական Սաֆարովին, իսկ մյուս դահիճը՝ Խաս Մահմեդովը, վիրավորվեց:

• 1921 թ. հուլիսի 19-ին Կ. Պոլսում՝ «Ճակատամարտ» թերթի խմբագրատան առաջ, 33-ամյա Մ. Թոռլաքյանը գնդակահարեց Պեհուտ խան Ջիվանշիրին՝ մուսավաթական Ադրբեջանի ներքին գործոց նախարարին՝ Բաքվի և Շուշիի հայության գլխավոր ջարդարարներից մեկին:




• 1921 թ. դեկտեմբերի 5-ին Ա. Շիրակյանը Հռոմում սպանեց երիտթուրքական կառավարության առաջին կաբինետի ղեկավար Սայիդ Հալիմին՝ կոտորածի ծրագիրը հաստատողին:

• 1922 թ. ապրիլի 17-ին Ա. Շիրակյանն ու Ա. Երկանյանը Բեռլինում գնդակահարեցին Տրապիզոնի նախկին նահանգապետ Ջեմալ Ազմիին և «Թեշքիլաթը մախուսե» կազմակերպության հիմնադիր Բեհաէդդին Շաքիրին. տիկին Թալեաթի աչքի առաջ (սպանվել է նաև Շաքիրի թիկնապահներից մեկը):

• 1922 թ. հուլիսի 25-ին խոտորջուրցի երիտասարդներ Պետրոս Տեր-Պողոսյանը և Արտաշես Գևորգյանը Թիֆլիսում գնդակահարեցին Ջեմալին:

• 1922 թ. օգոստոսի 4-ին Միջին Ասիայից Աֆղանստան ճողոպրելիս՝ արցախցի Հակոբ Մելքումովի գլխավորած ջոկատի հետ ընդհարման ժամանակ, սպանվեց Էնվեր փաշան:

«Նեմեսիսն» ընդհատվեց, երբ ընդունվեց «Պրոմեթևս» ծրագիրը (1922 թ. հայ, վրացի և ազերի վտարանդի կառավարությունները համագործակցության մեջ մտան ընդդեմ բոլշևիզմի, և ՀՅԴ ղեկավարությունը որոշեց ընդհատել թուրք ոճրագործների ահաբեկումը): Իթթիհատի գլխավոր քարտուղար Նազըմը գաղտնի անցավ Թուրքիա, 1926 թ. Քեմալի դեմ կազմակերպված անհաջող մահափորձից հետո ձերբակալվեց և կախաղան հանվեց նույն թվին, Զմյուռնիայում (Իզմիր):

### «Նեմեսիսի» մասնակիցները

Շահան Նաթալի (1884-1983), Արմեն Գարո (Գարեգին Պաստերմաջյան, 1872-1923), Միսաք Թոռլաքյան (1894-1968), Արշավիր Շիրակյան (1902-1973), Արամ Երկանյան (1895-1930), Արտաշես Գևորգյան, Պետրոս Տեր-Պողոսյան, Ստեփան Ծաղիկյան:



# ԱՄՆ-ն արդեն ճանաչել է Ցեղասպանությունը

**- Մարդիկ սկսել են հարց տալ՝ ի՞նչ է տալու ցեղասպանության ճանաչումը, եւ արդյոք դրանից բխո՞ւմ է հատուցում: Արդյոք, եթե Օբաման արտասանեց genocide բառը, դրանից կփոխվի՞ ամերիկյան քաղաքականությունը:**

Ոչինչ չի փոխվելու, որովհետեւ ԱՄՆ-ն արդեն ճանաչել է Հայոց ցեղասպանությունը. առաջին անգամ 1951-ին, իսկ 80-ականներին այն երկու անգամ վերահաստատել է Ռեյգանը: Կանադայի խորհրդարանի երկու պալատները եւս ճանաչել են, կառավարությունն էլ հանդես է եկել հայտարարությամբ, բայց դրանից ոչինչ չի փոխվել:

Մինչդեռ Սփյուռքի համայնքները ժամանակի եւ ֆինանսների մեծ մասը շարունակում են ծախսել միայն ճանաչման գործընթացի վրա: Փոխանակ վարձեն իրավաբանների, ֆինանսավորում են միայն քաղաքական գործիչների. Ջոն Քերին դրա վառ օրինակն է: Նա իր ողջ կյանքում հանդես է եկել հայամետ հայտարարություններով, բայց հենց դարձավ պետքարտուղար՝ 24 ժամում տեսակետը փոխեց: Այսինքն՝ ԱՄՆ-ում ոչ թե պաշտոնյան է որոշում քաղաքականությունը, այլ կա որոշված քաղաքականություն, որով պաշտոնյաները պարտավոր են առաջնորդվել:

*Արա ՊԱՊՅԱՆ*



## Հեդվիգ Բյուլ. ծննդյան 125-ամյակի առիթով

# «Իմ սիրտը հայ է»

Հեդվիգ Բյուլը ծնվել է 1887 թ. Էստոնիայի Հաապսալու փոքրիկ քաղաքում: Լինելով բարեկեցիկ ընտանիքի զավակ` Հեդվիգը ստացել է հիանալի կրթություն (Սանկտ Պետերբուրգում բարձրագույն մանկավարժական, իսկ Գերմանիայում` միսիոներական կրթություն): Նա տիրապետել է մայրենի էստոներենին, ռուսերենին, ֆրանսերենին, անգլերենին, գերմաներենին, իսկ Կիլիկիայում միսիոներական առաքելությունն իրականացնելու ընթացքում` նաև թուրքերենին և հայերենին:

1909 թ. երիտասարդ Հեդվիգը եվրոպական մամուլի էջերից տեղեկանում է Ադանայում հայկական կոտորածների սարսափազդու լուրերին և կայացնում իր համար ճակատագրական որոշում. մեկնել հեռավոր երկիր` կոտորածների հետևանքով որբացած քրիստոնյա երեխաների փրկության գործին մասնակցելու համար: 1911 թ. նա ժամանում է Կիլիկիա և անցնում աշխատանքի Մարաշի ծնողազուրկ հայ երեխաների համար գերմանացի ավետարանական քարոզիչների կողմից բացված «Բեյթել» որբանոցում` որպես ուսուցչուհի: Այստեղ չորս տարի պաշտոնավարելուց հետո` 1915 թ. նա ականատես եղավ երիտթուրք իշխանությունների կողմից իրականացվող հայկական կոտորածներին: 1916-19 թթ. Հեդվիգ Բյուլն աշխատել է նույն միսիոներական առաքելությանը պատկանող Հարունիե գյուղի (Մարաշից հարավ) գերմանական որբանոցում: 1918 թ. երիտասարդ միսիոներուհին իր գործադրած գերմարդկային ջանքերի շնորհիվ կարողացավ թուրքական աքսորից փրկել որբանոցի սաներին և նրանց ազատել վերահաս վտանգից: 1919 թ. հաշվի առնելով Կիլիկիայում ստեղծված քաղաքական իրավիճակը` Հ. Բյուլը հարկադրված էր մեկնել Էստոնիա: Սակայն նրա բաժանումը իր սիրելի հայ ժողովրդից երկար չտևեց:

1922 թ. սկսվում է Հ. Բյուլի հայասիրական գործունեության երկրորդ փուլը: Նա անդամագրվում է Ստրասբուրգ քաղաքում հիմնադրված «Քրիստոնեական առաքելություն Արևելքի մեջ» ավետարանական մարդասիրական կազմակերպությանը և մեկնում Հալեպ: Այդ ժամանակ Սիրիայում կար ավելի քան 160 000 գաղթական, որոնք հիմնականում ապաստան էին գտել Հալեպի Սուլեյմանիե և Ռամադանիե արվարձաններում կառուցված հյուղակներում («Հայկական քեմփ») և ապրում էին ծայրահեղ աղքատության ու թշվառության մեջ: Կենցաղային տարրական պայմաններից զուրկ հայ գաղթականության շրջանում խիստ տարածված էին վարակիչ զանազան հիվանդություններ, որոնք օրական հարյուրավոր մարդկային կյանքեր էին խլում: Անհրաժեշտ էր շտապ կերպով կազմակերպել հիվանդների փրկության գործը: Հալեպում Հ. Բյուլի նախաձեռնությամբ բացվում է հիվանդանոց, որտեղ աշխատում են Սիրիայի նշանավոր հայ բժիշկները (Ավետիս Ճեպեճյան, Ֆիլիպ Հոֆմանյան և այլն): «Հայկական քեմփ»-ում ապրող հայ գաղթականների վիճակը թեթևացնելու ուղղությամբ կարևոր քայլերից մեկը եղավ աշխատատեղերի ստեղծումը: Հ. Բյուլն իր մարաշցի ծանոթների օգնությամբ հիմնում է ջուլհականոց և ձեռագործի արհեստանոց: Այստեղ աշխատանք գտան մոտ 500 հայ կանայք և աղջիկներ, որոնց ստեղծած կարպետներն ու ձեռագործները վաճառվում էին եվրոպական երկրներում, իսկ ստացված հասույթը տրվում էր հայ կանանց` իբրև աշխատավարձ:

Հեդվիգ Բյուլի նախաձեռնությամբ Հալեպի տարբեր դպրոցներում սովորող ավելի քան 250 հայ երեխաների համար սահմանվում են կրթաթոշակներ: Նա մշակեց նաև երեխաների որդեգրման մի յուրօրինակ ձև, որի համաձայն եվրոպական բարերար ընտանիքները պետք է որդեգրեին Հալեպում հաստատված հայ գաղթական ընտանիքի երեխաներից մեկին և ամսեկան մեկ ոսկի ուղարկեին որդեգրվածի հարազատներին: Իր կատարած բազմաթիվ հայանպաստ աշխատանքների համար Հ. Բյուլն անչափ սիրված էր Հալեպի հայ համայնքի կողմից, որի համար արժանացել է «Բյուլ Մայրիկ» պատվավոր կոչմանը:

1947 թ. աշխարհասփյուռ հայության համար Խորհրդային Հայաստան ներգաղթելու առիթ է ընձեռնվում: Բազմաթիվ սիրիահայեր, այդ թվում նաև Հ. Բյուլին հարազատ դարձած մարդիկ, հաստատվում են Մայր հայրենիքում: Հայասեր էստոնուհու նվիրական երազանքն էր իր սիրիահայ բարեկամների հետ բնակություն հաստատել Հայաստանում, սակայն ներգաղթի կոմիտեն մերժում է նրա խնդրագիրը:

Գրեթե 40 տարի իր կյանքն անմնացորդ նվիրելով հայ ժողովրդին` Հ. Բյուլը 1951 թ. 64 տարեկան հասակում հեռանում է Հալեպից` այդպես էլ չունենալով սեփական ընտանիքը: Սակայն նա չի կարողանում վերադառնալ հայրենի Էստոնիա, քանի որ այն Խորհրդային Միության կազմում էր, հետևաբար մուտքի թույլտվություն ստանալն` անհնար: Հ. Բյուլը հաստատվում է Եվրոպայում: Այստեղ նա շարունակում է նամակագրական կապը իր նախկին սաների հետ, որոնք ցրվելով աշխարհով մեկ` չէին մոռանում սիրելի Բյուլ Մայրիկին: Նրանցից մեկին ուղղված նամակում Հեդվիգ Բյուլը գրել էր. «...իմ սիրտը հայ է...»:

1965 թ. 78-ամյա Բյուլը կրկին ժամանեց Սիրիա, ապա Լիբանան` մասնակցելու Հայոց ցեղասպանության 50-ամյա տարելիցին



նվիրված միջոցառումներին Հալեպում և Բեյրութում: Կյանքի վերջին տարիները Հ. Բյուլն անցկացրեց գերմանական ծերանոցներից մեկում: 90-անց զառամյալ կինը` մահվան մահճում պառկած, մոռացել էր այն վեց լեզուները, որոնց նա ազատորեն տիրապետում էր և ծերանոցի աշխատակիցների հետ հաղորդակցվում էր միայն իրեն հարազատ դարձած հայերենով: Բյուլ Մայրիկը մահացավ 1981 թ. հոկտեմբերի 3-ին` 94 տարեկան հասակում:

2003 թ. նրա գերեզմանից բերված հողը ամփոփվեց Հայոց ցեղասպանության զոհերի հուշահամալիրի Հուշապատի մեջ:

**Օգտագործված գրականություն.**
**Վարդան Գրիգորյան, Հայությանը նվիրված կյանք, Երևան, 1996 թ., 87 էջ:**

Կան հիմարներ, ովքեր գիտակցում են իրենց հիմարությունը և ճարպկորեն օգտվում դրանից:

***ԼԱՌՈՇՖՈՒԿՈ***

Քաղաքականության, ինչպես և սիրո մեջ չեն լինում խաղաղ պայմանագրեր, լինում են միայն զինադադարներ:

***Գ. ԼԵՎԻՍ***

Մենք այնքան ենք սովոր կեղծել ուրիշների մոտ, որ ի վերջո սկսում ենք կեղծել ինքներս մեզ:

***ԼԱՌՈՇՖՈՒԿՈ***

Մաքուր խիղճը լավագույն բարձն է:

***Հ. ԻԲՍԵՆ***

Քաղաքական գործչին արհամարհում են հենց այն պահից, երբ նրանից ոչ ոք չի վախենում:

***ՍՏԵՖԱՆ ՑՎԵՅԳ***

